

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ







# ԿԱՐԼ ՄԱՐՔՍԻ ՈՒՍՄՈՒՆՔԸ ԵՎ ՍՍՀՄ-ՈՒՄ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

**ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎ**
ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար

*ՀԱՐՅՈՒՐ ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ այն օրից, երբ կյանքից հեռացավ այն մարդը, որի անունն էր Կարլ Մարքս։ Մի ամբողջ դար։ Դրամատիկական ցնցումների, հեղափոխական փոթորիկների, մարդկության ճակատագրում արմատական փոփոխությունների դար։ Դար, որը խորտակել, մի կողմ է շպրտել բազմաթիվ փիլիսոփայական կոնցեպցիաներ, սոցիալական տեսություններ, քաղաքական դոկտրիններ։ Եվ մարքսիզմի՝ մեկը մյուսին հաջորդած հաղթանակների, հասարակական զարգացման վրա նրա հարաճուն ներգործության դար։*

*Որքան ավելի է առաջ ընթանում ժամանակը, այնքան ավելի պարզ են դառնում Մարքսի կյանքի սխրանքի իմաստն ու մասշտաբները։*

*Հազարամյակներով մարդիկ փնտրել են հասարակությունը արդարացիորեն վերակառուցելու, շահագործումից, բռնությունից, նյութական և հոգևոր աղքատությունից ազատագրվելու ուղիներ։ Այդ որոնումներին են նվիրաբերել իրենց ականավոր մտածողներ։ Սերունդ սերնդի հետևից հանուն այդ նպատակի իրենց կյանքն են զոհել ժողովրդի երջանկության համար պայքարած մարտիկներ։ Բայց հենց Մարքսի տիտանական գործունեության մեջ է, որ մեծ գիտնականի աշխատանքը առաջին անգամ ի մի ձուլվեց մասսաների հեղափոխական շարժման առաջնորդի ու կազմակերպչի անձնազոհ պայքարի պրակտիկայի հետ։*

*Մարքսին իրավամբ համարում են այն ամենայն լավի ժառանգորդը, որ ստեղծել են գերմանական կլասիկ փիլիսոփայությունը, անգլիական քաղաքատնտեսությունը, ֆրանսիական ուտոպիական սոցիալիզմը։ Բայց նա, քննադատաբար վերամշակելով դրանց նվաճումները, շատ ավելի հեռուն գնաց։ Նախ և առաջ այն պատճառով, որ ձեռնամուխ եղավ այն խնդրի լուծմանը, որ ինքը, ինչպես վայել է հանճարին, ձևակերպել է խոր ու պարզ.* «Փիլիսոփաները միայն տարբեր կերպով բացատրել են աշխարհը, բայց խնդիրն այն փոխելն է» *(Կ. Մարքս և Ֆ. Էնգելս,* Ընտիր երկեր, *հ. 1։ «Հայաստան» հրատ., 1972, էջ 4)։ Եվ աշխարհի հեղափոխական վերափոխման գործին Մարքսը նվիրաբերեց իր բացառիկ մտքի ամբողջ ուժը, իրեն իսկ՝ առանց մնացորդի։*

*Հետևողական գիտական տեսության և հեղափոխական պրակտիկայի միասնությունը մարքսիզմի տարբերիչ գիծն է։ Ինքը՝ Մարքսի գիտական ստեղծագործությունը, չէր կարող ծավալվել այլ կերպ, քան այն ժամանակ դեռ*

պատմականորեն բոլորովին երիտասարդ դասակարգի՝ պրոլետարիատի ինքնուրույն քաղաքական ասպարեզ դուրս գալու հետ անխզելի կապի մեջ։ Եվ Մարքսին բախտ վիճակվեց տեսնել, թե ինչպես են կատարվում, իրականություն դառնում դեռ պատանեկության տարիներին ասած իր սեփական մարգարեական խոսքերը. «Այնպես, ինչպես փիլիսոփայությունն է պրոլետարիատի մեջ գտնում իր նյութական զենքը, այնպես էլ պրոլետարիատն է փիլիսոփայության մեջ գտնում իր հոգևոր զենքը...»։ (К .Маркс и Ф. Энгельс. **Соч.**, т. I, стр. 428)։

Այն փիլիսոփայությունը, որ Մարքսը տվեց բանվոր դասակարգին, մի հեղաշրջում է հասարակական մտքի պատմության մեջ։ Մարդկությունը ինքն իր մասին մի աննշան մասնիկն իսկ չգիտեր այն ամենից, ինչ նա իմացավ մարքսիզմի շնորհիվ։ Մարքսի ուսմունքը, որը ներկայացված է դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի, քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմի տեսության օրգանական ամբողջականության մեջ, մի իսկական հեղափոխություն հանդիսացավ աշխարհհայացքի մեջ և միաժամանակ լուսավորեց ամենախոր սոցիալական հեղափոխությունների ճանապարհը։

Մարքսը բացահայտեց պատմության շարժման օբյեկտիվ, իրենց հիմքում նյութական օրենքները, դրանք հայտնաբերեց այնտեղ, որտեղ առաջ ամեն ինչ կամ թվում էր կույր պատահականության խաղ, առանձին անհատների կամայականություն, կամ ներկայացվում էր որպես առասպելական համաշխարհային ոգու ինքնարտահայտություն։ Տեսանելիի, թվացողի հետևում, երևույթի հետևում նա տեսավ էությունը։ Նա պոկեց քողը կապիտալիստական արտադրության, կապիտալի կողմից աշխատանքի շահագործման առեղծվածից՝ ցույց տվեց, թե ինչպես է ստեղծվում և ով է յուրացնում հավելյալ արժեքը։

Մարքսի այս երկու խոշորագույն հայտնագործություններին՝ պատմության մատերիալիստական ըմբռնմանը և հավելյալ արժեքի տեսությանը առանձնահատուկ նշանակություն էր տալիս Ֆրիդրիխ Էնգելսը՝ նրա մեծ զինակիցն ու բարեկամը։ Եվ դժվար չէ հասկանալ, թե ինչու։ Հենց այդ հայտնագործությունները հնարավորություն տվեցին սոցիալիզմը ուտոպիայից դարձնել գիտություն, տալ դասակարգային պայքարի գիտական ըմբռնումը։ Հենց դրանց հիման վրա հնարավոր եղավ այն, ինչ Վ. Ի. Լենինը անվանել է գլխավորը Մարքսի ուսմունքում՝ «պրոլետարիատի, որպես սոցիալիստական հասարակության կերտողի, համաշխարհային-պատմական դերի պարզաբանումը» (ԵԼԺ, հ. 23, էջ 1)։

Այո, Մարքսը մեծագույն գիտնական է։ Բայց Մարքսը նաև մեծագույն պրակտիկ-հեղափոխական է։ Եվ կարելի է միայն զարմանալ, թե ինչքան բան է հասցրել անել իր իսկ նշած նպատակներին հասնելու համար։

Էնգելսի հետ միասին Մարքսը ստեղծեց Կոմունիստների միությունը՝ գիտակից, հեղափոխական պրոլետարիատի պատմության մեջ առաջին քաղաքական կազմակերպությունը։ Այդպիսով, նա դարձավ առաջին կոմունիստը՝ այս բառի ամենաարդիական ըմբռնմամբ, մեր այժմյան համաշխարհային շարժման հիմնադիրը։

«Բանվոր դասակարգի ինտերնացիոնալ դաշինքը միայն կարող է ապահովել նրա վերջնական հաղթանակը»,— գրել է Մարքսը (К. Маркс и Ф. Энгельс. **Соч.**, т. 16, стр. 336)։ Եվ նա ինքը, առաջին Ինտերնացիոնալի հիմնադիրը, առանց ձեռքերը ծալելու, կռում էր բանվորների միջազգային միասնությունը։ Մարքսի և Էնգելսի՝ աշխարհի կոմունիստներին ուղղած քաղաքական պատգամները չի կարելի պատկերացնել առանց «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» բոցաշունչ կոչի։

Լինելով համոզված ինտերնացիոնալիստ, Մարքսը, ինչպես ոչ ոք, կարողանում էր խորամուխ լինել ամենաբազմապիսի երկրների իրադրության առանձնահատկությունների մեջ՝ Անգլիայից մինչև Հնդկաստան, Ֆրանսիայից մինչև Չինաստան, ԱՄՆ-ից մինչև Իռլանդիա։ Դրա հետ մեկտեղ, ուշադիր զննելով առանձին ժողովուրդների կյանքը, շարունակ գտնում էր դրա փոխադարձ կապը ողջ աշխարհի կյանքի հետ։ Եվ այստեղ նրա համար միշտ ծառացած էր մի արմատական հարց՝ ո՞վ կսկսի կապիտալիստական կարգերի



հեղափոխական բեկումը և առաջինը կընթանա այն ճանապարհով, որը տանում է դեպի մարդկության կոմունիստական ապագան։

Այդ հարցի պատասխանը տվել է պատմությունը։ Ռուսաստանի պրոլետարիատին վիճակվեց լինել հեղափոխական առաջամարտիկը։ Մեր օրերում անգամ գտնվում են Հոկտեմբերյան հեղափոխության «քննադատներ», որոնք պնդում են, թե իբր այն տեղի է ունեցել հակառակ Մարքսի բոլոր ակնկալությունների։ Այնպես են ներկայացնում, թե իբր Մարքսը իր հեղափոխական կանխատեսումներում ընդհանրապես հաշիվներից դուրս էր նետում Ռուսաստանը։ Իսկ չէ որ իրականում նա վիթխարի հետաքրքրություն էր ցուցաբերում Ռուսաստանի գործերի նկատմամբ։ Այդ գործերը ավելի լավ ըմբռնելու համար Մարքսը ուսումնասիրում է ռուսաց լեզուն։ Լինելով ցարիզմի անհաշտ թշնամին, նա կանխատեսորեն գնահատեց Ռուսաստանում բարձրացող հասարակական շարժման հեռանկարը, տեսավ, որ այնտեղ հասունանում է «վիթխարագույն սոցիալական հեղափոխություն» (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. **Соч.**, т. 32, стр. 549), որը համաշխարհային նշանակություն կունենա։ Հիրավի, ապագա իրադարձությունների մասին անգամ Մարքսը դատում էր ավելի ճիշտ, քան մեր ներկայիս որոշ «քննադատներ» անցյալ իրադարձությունների մասին։

Էնգելսին են պատկանում այն խոսքերը, թե Մարքսի մահվամբ մարտնչող պրոլետարիատի շարքերում առաջացավ մի հսկայական դատարկություն։ Կորուստն իրոք չափազանց մեծ էր։ Բայց Մարքսի դրոշը մնաց հուսալի ձեռքերում։ Այն բարձր պահած առաջ տարավ ինքը՝ Էնգելսը, որը կանգնած էր ուժեր կուտակող հեղափոխական բանվորական շարժման գլուխ։ Եվ դեռ Էնգելսի կենդանության ժամանակ պրոլետարիատի դասակարգային պայքարի ասպարեզ ելավ Վլադիմիր Իլյիչ Լենինը։

Լենինը Մարքսի և Էնգելսի հավատարիմ հետևորդն էր։ Նա, իր իսկ խոստովանությամբ, հանդուրժել չէր կարող նվազագույն վատաբանություն անգամ իր մեծ ուսուցիչների հասցեին։ Եվ այդպես միայն կարող էր վարվել այն մարդը, որը ամենից ավելի շատ բան է արել մարքսիզմի բոլոր բաղադրիչ մասերի ոչ միայն պաշտպանության, այլև պատմական նոր պայմաններում դրանց ստեղծագործական զարգացման համար, նրա պրակտիկ իրականացման համար։ Նա մարքսիզմը հասցրեց նոր, ավելի բարձր աստիճանի։ Լենինի անունը անբաժանելի է Մարքսի անունից։ Լենինիզմը իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի, գաղութային սիստեմի փլուզման, մարդկության՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանի մարքսիզմն է։ Լենինիզմից դուրս և առանց դրա մարքսիզմը մեր ժամանակներում պարզապես անհնարին է։

Լենինը և նրա ստեղծած բոլշևիկների կուսակցությունը գլխավորեցին առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխությունը, որը արմատապես փոխեց աշխարհի սոցիալ-քաղաքական դեմքը։ Դրանով իսկ բացվեց նոր դարագլուխ՝ բանվոր դասակարգի, ժողովրդական մասսաների վիթխարի մեծագործությունների ու պատմական նվաճումների դարագլուխը։ Դրանով իսկ Մարքսի ստեղծած գիտական սոցիալիզմը միաձուլվեց նոր հասարակարգ կառուցող միլիոնավոր աշխատավորների կենդանի պրակտիկայի հետ։

ԱՅՍՕՐ ՄԵՐ ԱՌՋԵՎ ավելի, քան Մարքսի ժամանակակիցների առջև, անչափ լայն ու խոր է բացահայտվում նրա ուսմունքի հարստագույն բովանդակությունը։ Չէ՛ որ մի բան է ընկալել սոցիալիզմի պատմական անհրաժեշտության գաղափարը դրա տեսական ձևով, և բոլորովին այլ բան՝ լինել նաև այդ գաղափարի կենսագործման պրոցեսի մասնակիցներ ու վկաներ։

Սոցիալիզմի ձևավորման պատմական կոնկրետ ուղիները ոչ ամեն ինչում հարթվեցին այնպես, ինչպես ենթադրում էին մեր հեղափոխական տեսության հիմնադիրները։ Սկզբնապես այն հաղթանակեց միայն մեկ, և բացի այդ տնտեսապես ոչ ամենազարգացած երկրում։ Ամբողջ բանն այստեղ այն է, որ Հոկտեմբերյան հեղափոխությունը տեղի ունեցավ պատմական նոր պայմաններում, որոնք Մարքսի կենդանության ժամանակ դեռ չկային, իմպերիալիզմի

դարաշրջանում, որը և իր արտացոլումը գտավ կյանքում լիովին հաստատված սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսության մեջ:

Բուրժուազիայի և ռեֆորմիզմի գաղափարախոսները մինչև այսօր էլ հորինում են փաստարկների ամբողջ համակարգեր, փորձելով ապացուցել, թե իբր այն հասարակարգը, որ ստեղծվել է ՍՍՀՄ-ում, մյուս եղբայրական երկրներում, չի համապատասխանում սոցիալիզմի այն ձևին, որ պատկերացնում էր Մարքսը: Խոսում են այն մասին, թե իբր ռեալությունը հեռացել է իդեալից: Բայց գիտակցաբար թե անգիտությամբ աչքաթող են անում, որ ինքը՝ Մարքսը մշակելով իր ուսմունքը, ամենից քիչ էր ղեկավարվում մաքրամաքուր, կոկիկ «սոցիալիզմի» ինչ-որ մի վերացական իդեալի պահանջներով: Իր պատկերացումներն ապագա հասարակարգի մասին նա բխեցնում էր կապիտալիստական խոշոր արտադրության օբյեկտիվ հակասությունների վերլուծությունից: Հենց այդպիսի, միակ գիտական մոտեցումը նրան հնարավորություն ընձեռեց ճիշտ որոշելու այն հասարակարգի հիմնական գծերը, որը դեռ ծնվելու էր XX դարի սոցիալական հեղափոխությունների մաքրող փոթորիկներում:

Կապիտալիզմին փոխարինելու եկող սոցիալ-տնտեսական կարգի անկյունաքարն է դառնում, ըստ Մարքսի, արտադրության միջոցների հանրային սեփականությունը: Կոմունիստական կուսակցության մանիֆեստի հատու խոսքերը շեշտում են այն նշանակությունը, որ մարքսիզմը տալիս է արտադրական հարաբերությունների այդ անհրաժեշտ հեղաշրջմանը. «...Կոմունիստներն իրենց տեսությունը կարող են արտահայտել մի դրույթով՝ մասնավոր սեփականության ոչնչացում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 155):

Ռեալ սոցիալիզմի պատմական փորձը ցույց է տալիս, որ «իմ» մասնավոր սեփականատիրականի վերափոխումը «մեր» ընդհանուրի հասարակ բան չէ: Հեղաշրջումը սեփականատիրության հարաբերություններում ամենևին չի հանգում միաժամանակյա մի ակտի, որի շնորհիվ արտադրության հիմնական միջոցները դառնում են համաժողովրդական սեփականություն: Տիրոջ իրավունք ստանալը և իսկական, իմաստուն, փութաջան տեր դառնալը ամենևին միևնույն բանը չէ: Սոցիալիստական հեղափոխություն կատարած ժողովուրդն ստիպված է լինելու դեռ երկար ժամանակ յուրացնել ողջ հանրային հարըստության գերագույն և անբաժան սեփականատիրոջ իր նոր դերը, յուրացնել և՛ տնտեսապես, և՛ քաղաքականապես, և՛, եթե կամենաք, հոգեբանորեն, մշակելով կոլեկտիվիստական գիտակցություն ու վարքագիծ: Չէ՞ որ սոցիալիստականորեն դաստիարակված է լոկ այն մարդը, որի համար միևնույն չեն ո՛չ միայն սեփական աշխատանքային հաջողությունները, բարեկեցությունը, հեղինակությունը, այլև աշխատանքի ընկերների, աշխատավորական կոլեկտիվի գործերը, ողջ երկրի շահերը, ամբողջ աշխարհի աշխատավորների շահերը:

Խոսելով «իմը» «մերը» դարձնելու մասին, չի կարելի մոռանալ, որ դա տևական, բազմապլան պրոցես է, որը հասարակացնել չի կարելի: Նույնիսկ այն ժամանակ, երբ վերջնականապես հաստատվում են սոցիալիստական արտադրական հարաբերություններ, ոմանց մեջ դեռևս պահպանվում են, իսկ երբեմն նաև վերարտադրվում անհատապաշտական սովորություններ, ուրիշների հաշվին, հասարակության հաշվին ձրի ապրելու ձգտում: Այս ամենը, օգտվելով Մարքսի տերմինաբանությունից, աշխատանքի օտարման հետևանքներն են, և դրանք ինքնաբերաբար և հանկարծակի չեն անհետանում գիտակցությունից, թեպետ ինքը՝ օտարացումն արդեն վերացված է:

Այս ամենը մենք այժմ քաջ գիտենք սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրակտիկայից: Բայց գիտենք նաև մի այլ բան: Այսինքն՝ այն, որ Մարքսի կանխատեսմանը լրիվ համապատասխան, ամենուրեք, որտեղ հաղթանակել են պրոլետարական հեղափոխություններ, արտադրության միջոցների այս կամ այն ձևերով հաստատված հանրային սեփականությունը դարձել է և՛ սոցիալիզմի գոյության հիմնական գործոնը, և՛ նրա հենարանը, և՛ նրա առաջընթացի գլխավոր աղբյուրը:



Սոցիալիստական սեփականության հիմքի վրա մեզ մոտ ստեղծվել է հզոր, պլանաչափորեն զարգացող էկոնոմիկա, որը հնարավորություն է ընձեռում դնելու և լուծելու իրենց մասշտաբներով խոշոր և բովանդակությամբ բարդ ժողովրդատնտեսական ու սոցիալական խնդիրներ: Իհարկե, մեր այդ հնարավորություններն իրենք իրենց չեն իրականացվում: Այստեղ առաջանում են և՛ պրոբլեմներ, և՛ լուրջ դժվարություններ: Դրանց ծագումը լինում է տարբեր, բայց այն երբեք կապված չէ արդեն հաստատված և իր առավելություններն ապացուցած հանրային, կոլեկտիվ սեփականության էության հետ: Ընդհակառակը, մեր ժողովրդական տնտեսության այս կամ այն տեղամասերում երբեմն նորմալ աշխատանքը խախտող թերությունների մի նշանակալի բաժնի պատճառը նահանջներն են տնտեսական կյանքի նորմերից, պահանջներից, կյանք, որի հիմքերի հիմքը արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունն է:

Վերցնենք, ասենք, նյութական, ֆինանսական, աշխատանքային ռեսուրսների խնայողության, դրանց ռացիոնալ օգտագործման հարցը: Այդ հարցի լուծմամբ մեծ չափով պայմանավորված են և՛ ընթացիկ հնգամյակի խնդիրների կատարումը, և՛ մեր էկոնոմիկայի զարգացումը հեռանկարում: Եթե խոր մտածենք, ապա այստեղ խոսքը հենց տնտեսավարության այն անհրաժեշտ նորմը պահպանելու մասին է, որ պահանջում է սոցիալիստական սեփականությունը և որի էությունն է խնայողական վերաբերմունքը համաժողովրդական սեփականությանը, դրա նախաձեռնողական ու եռանդուն բազմապատկումը: Այս նորմի խախտումների համար ստիպված է լինում հատուցել ողջ հասարակությունը, և նա իրավունք ունի խստորեն պատժելու նրանց, ովքեր անփութության, անկարողության պատճառով և կամ շահադիտական նկատառումներով վատնում են նրա հարստությունը:

Մեր հոգսերն այժմ կենտրոնացած են արտադրության, ամբողջ էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման վրա: Այս պրոբլեմի կարևորությունը խորապես գիտակցել են կուսակցությունը, սովետական ժողովուրդը: Սակայն, ինչ վերաբերում է դրա պրակտիկ լուծմանը, գործն ընթանում է ոչ այնպես հաջող, ինչպես անհրաժեշտ է: Ի՞նչն է խանգարում այստեղ: Ինչո՞ւ վիթխարի կապիտալ ներդրումներից մենք այժմ հարկ եղած հատույցը չենք ստանում, ինչո՞ւ մեզ չբավարարող տեմպերով են արտադրության մեջ յուրացվում գիտության, տեխնիկայի նվաճումները:

Իհարկե, կարելի է նշել շատ պատճառներ: Ամենից առաջ չի կարելի չտեսնել, որ տնտեսական մեխանիզմի, կառավարման ձևերի ու մեթոդների կատարելագործմանն ու վերակառուցմանն ուղղված մեր աշխատանքը ետ է մնացել այն պահանջներից, որ ներկայացնում է սովետական հասարակության նյութատեխնիկական, սոցիալական, հոգևոր զարգացման ձեռք բերված մակարդակը: Եվ դա գլխավորն է: Դրա հետ մեկտեղ զգացվում է, իհարկե, նաև, օրինակ, այնպիսի գործոնների ազդեցությունը, ինչպես՝ գյուղատնտեսական արտադրանքի նշանակալի քանակությամբ պակաս ստացումը վերջին չորս տարիների ընթացքում, երկրի հյուսիսային և արևելյան շրջաններում վառելիքաէներգետիկ և հումքային ռեսուրսների արդյունահանման համար հարաճուն չափերով ֆինանսական և նյութական միջոցներ հատկացնելու անհրաժեշտությունը:

Նորից ու նորից կարելի է կրկնել Մարքսի այն հիմնարար գաղափարը, որ արտադրողական ուժերի առաջընթացն արագացնելու համար հարկավոր են տնտեսական կյանքի կազմակերպման համապատասխան ձևեր, բայց գործը տեղից չի շարժվի, քանի դեռ այդ տեսական ճշմարտությունը չփոխադրվի պրակտիկայի կոնկրետ լեզվի: Այսօր առաջադրվում է մի հիմնական խնդիր՝ մտածել և հետևողականորեն իրականացնել այնպիսի միջոցներ, որոնք ավելի մեծ ասպարեզ տան մեր էկոնոմիկայի ներսում եղած վիթխարի ստեղծարար ուժերի գործողությանը: Այդ միջոցները պետք է լինեն հանգամանորեն նախապատրաստված, ռեալիստական, ուրեմն և դրանց մշակման ժամանակ ան-

հրաժեշտ է անշեղորեն ելնել սոցիալիզմի տնտեսական համակարգի զարգաց-
ման օրենքներից։ Այդ օրենքների օբյեկտիվ բնույթը պահանջում է ձերբա-
ղատվել էկոնոմիկան նրա էությանը խորթ մեթոդներով կառավարելու ամեն
տեսակ փորձերից։ Ավելորդ չէ այստեղ հիշել Լենինի նախազգուշացումն այն
վտանգի մասին, որ կա որոշ աշխատողների այն միամիտ հավատի մեջ, թե
իբր իրենց բոլոր խնդիրները իրենք կարող են լուծել «կոմունիստական դեկ-
րետավորումով» (տե՛ս ԵԼժ, հ. 44, էջ 209)։

Մյուս կողմից, համաձայնության գալով անհրաժեշտ միջոցների մասին,
ընդունելով համապատասխան որոշումներ, անթույլատրելի է գործը լքել կես
ճանապարհին։ Այն ամենը, ինչ որոշվել է, պետք է կատարվի։ Սա մեր կու-
սակցության լենինյան ավանդույթն է, և մեզ վայել չէ նահանջել դրանից։

Հասարակության շահերն ամբողջությամբ վերցրած կարևորագույն կողմ-
նորոշիչ են սոցիալիստական սեփականության վրա հիմնված էկոնոմիկայի
զարգացման համար։ Բայց այստեղից, իհարկե, չի հետևում, որ հանուն ընդ-
հանուր բարօրության գաղափարի, սոցիալիզմը, իբր, ճնշում կամ անտեսում
է անձնական, տեղական շահերը, տարբեր սոցիալական խմբերի յուրահատուկ
պահանջմունքները։ Ամենևին ոչ։ ««Գաղափարը»,— ինչպես ընդգծում էին
Մարքսը և Էնգելսը,— միշտ էլ խայտառակում էր իրեն, հենց նա զատվում
էր «շահից»» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Սուրբ ընտանիք։ «Հայաստան» հրատ.,
1967, էջ 131)։ Մեր ժողովրդատնտեսական մեխանիզմի կատարելագործման
կարևորագույն խնդիրներից մեկն էլ հենց այն է, որ ապահովենք այդ շահերի
ճշգրիտ հաշվառումը, հասնենք համապետական շահերի հետ դրանց լավա-
գույն զուգակցման և այդպիսով օգտագործենք դրանք որպես սովետական
էկոնոմիկայի աճի, նրա արդյունավետության, աշխատանքի արտադրողակա-
նության բարձրացման, սովետական պետության տնտեսական ու պաշտպա-
նական հզորության համակողմանի ամրապնդման շարժիչ ուժ։

Սոցիալիստական ժողովրդական տնտեսության արդյունավետության մա-
սին անհրաժեշտ է, իհարկե, դատել՝ հաշվի առնելով ո՛չ միայն զուտ տնտե-
սական, այլև սոցիալական չափանիշները, նկատի ունենալով հանրային ար-
տադրության վերջնական նպատակը։ Կապիտալիզմի օրոք այդպիսի նպատակ
է կապիտալի շահույթը. սոցիալիզմի օրոք, ինչպես տեսականորեն ապացուցել
է Մարքսը՝ աշխատանքի մարդկանց բարեկեցությունն է, պայմանների ստեղ-
ծումը անհատի համակողմանի զարգացման համար։ Ռեալ սոցիալիզմը
մարքսյան տեսության այդ դրույթը դարձնում է կենդանի իրականություն։

Իրոք, որքան էլ բազմակողմանի են սովետական էկոնոմիկայի առջև ծա-
ռացած խնդիրները, դրանք բոլորն ի վերջո միաձուլվում են մեկ խնդրի մեջ՝
ապահովել աշխատավորների բարեկեցության աճը, նյութական պայմաններ
ստեղծել նրանց հոգևոր, կուլտուրական կյանքի, հասարակական ակտիվության
հետագա ծաղկման համար։ Դրանով որոշվում է նաև ՍՄԿԿ տնտեսական քա-
ղաքականության գլխավոր ուղղությունը, որն արտացոլված է նրա XXVI հա-
մագումարի փաստաթղթերում, ներկայումս կենսագործվող պարենային ծրա-
գրում, ժողովրդատնտեսական հարցերի վերաբերյալ ընդունված կուսակցական
որոշումներում։ Պարզ է, որ դրանով շատ, անչափ շատ բան է որոշվում նաև
արտադրության ռացիոնալացման, դրա ինտենսիվացման նկատմամբ մեր
ունեցած մոտեցման մեջ։ Այլ խոսքով, մեզ մոտ տնտեսական արդյունավե-
տության պրոբլեմները լուծվում են ոչ թե աշխատավորների հաշվին, այլ հենց
է շահ նրանց։ Դա չի պարզեցնում մեր աշխատանքը, բայց դրա փոխարեն թույլ
է տալիս այդ աշխատանքը վարել, հենվելով ողջ սովետական ժողովրդի
անսպառ ուժերի, գիտելիքների, ստեղծագործական եռանդի վրա։

Մարքսը կապիտալիզմին փոխարինելու եկող ֆորմացիայի պատմական
կոչումը համարում էր հենց այն, որ աշխատանքը տանջալի, հարկադրական
պարտականությունից դառնա անհատի առաջին կենսական պահանջմունքը։
Մենք այժմ փորձով գիտենք, թե որքան շատ բան է հարկավոր անել այդ գա-



ղափարը ողջ լիակատարությամբ իրականացնելու երկար ճանապարհին։ Բայց
վճռական բնագիծն արդեն նվաճված է։ Վերջ է տրված կապիտալիզմի համար
օրինաչափ այն վիճակին, երբ աշխատանքի արդյունքը աշխատավորի դեմ-
հանդիման հառնում է որպես մի խորթ, նույնիսկ թշնամական էություն և որի
ժամանակ ստացվում է, թե ինչքան ավելի շատ ֆիզիկական ու մտավոր ուժեր
է ծախսում բանվորը, այնքան նա ավելի է մեծացնում իր կեղեքիչների հզո-
րությունը։ Սոցիալիզմի՝ իր նշանակությամբ մեծագույն և անվիճելի նվաճումն
այն է, որ ստեղծվել են այնպիսի պայմաններ, որոնք յուրաքանչյուր մարդու
համար ապահովում են աշխատանքի իրավունք։ Հենց աշխատանքը, գիտակ-
ցական, բարեխիղճ, նախաձեռնողական, հասարակության բարօրությանը ծա-
ռայող աշխատանքն է մեզ մոտ համարվում անհատի արժանապատվության
և հասարակական հեղինակության բարձրագույն չափանիշը։

Պրակտիկայով ապացուցված է նաև, որ աշխատանքի միջոցների ու առար-
կաների հանրայնացումը հենց սոցիալիզմին հատուկ հասարակական կլիմայի
ձևավորման անհրաժեշտ և ներազդու գործոն է, կլիմա, որի ժամանակ մար-
դուն անծանոթ է վաղվա օրվա նկատմամբ անվստահության ճնշող զգացումը,
որտեղ տիրում են կոլեկտիվիստական ոգին և ընկերական փոխօգնությունը,
բարոյական առողջությունը և սոցիալական լավատեսությունը։ Իրենց ամբող-
ջության մեջ այդ ամենը նշանակում է աշխատավոր մասսաների կյանքի
սկզբունքորեն նոր որակ, որն ամենևին չի հանգում լոկ նյութական հարմա-
րավետության, այլ ներառնում է մարդկային լիարյուն կեցության ողջ տար-
րապատկերը։

Հասկանալի է, որ այդ ամենը ձեռք է բերվում հանրային սեփականության
հաստատման ոչ հաջորդ օրն իսկ։ Ուստի այն չի կարող հենց միանգամից
գնահատվել որպես «արդեն պատրաստի», ավարտուն սոցիալիզմ։ Հեղաշրջու-
մը սեփականատիրության հարաբերություններում ինքնին չի վերացնում մարդ-
կային համակեցության դարերով կուտակված բոլոր բացասական գծերը։
Խոսքն այլ բանի մասին է։ Այն մասին, որ առանց այդպիսի հեղաշրջման, սո-
ցիալիզմի ցանկացած «մոդելը», որքան էլ հրապուրիչ պաճուճես այն, կլինի
անկենսունակ, կապրի միայն նրա ստեղծողների երևակայության մեջ։ Սա
մարքսիզմի տարրական ճշմարտությունն է։ Եվ այն այսօր նույնքան ճշմարիտ
է, որքան և հարյուր տարի առաջ։

ՄԱՐՔՍԻԶՄԻ՝ ԱՅՍՊԵՍ ԿՈՉՎԱԾ ՏԱՐՐԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ
ընդհանրապես հարկավոր է շատ զգույշ վարվել, քանի որ դրանք չհասկանալու
կամ մոռացության տալու համար դաժանորեն պատժում է ինքը՝ կյանքը։ Մե-
ծագույն դժվարությունների, նույնիսկ սխալների գնով է գիտակցվել, օրի-
նակ, բաշխման վերաբերյալ Մարքսի հայացքների ողջ նշանակությունը։ Նա
հետևողականորեն մատնանշում էր, որ կոմունիզմի առաջին փուլում յուրա-
քանչյուր աշխատող «հասարակությունից ետ է ստանում, բոլոր հանուրդներից
հետո, ճիշտ նույնքան, որքան ինքը տալիս է նրան», մի խոսքով, իր աշխա-
տանքի քանակին ու որակին ճիշտ համապատասխան (տե՛ս Կ. Մարքս և Ֆ.
Էնգելս, Ընտիր երկեր, հ. 3, էջ 15), որը համապատասխանում է սոցիալիզմի
հիմնական սկզբունքին՝ «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրա-
քանչյուրին՝ ըստ աշխատանքի»։ Լինելով անբասիր դեմոկրատ և հումանիստ,
Մարքսը հավասարեցման վճռական հակառակորդ էր, կտրականապես մերժում
էր հաճախ դրսևորվող և իր ժամանակ դեմագոգիկ կամ միամիտ դատողու-
թյունները սոցիալիզմի՝ որպես բաշխման ու սպառման բնագավառում «ընդ-
հանուր հավասարության» մասին։

Այժմ արդեն պրակտիկայից ևս, սոցիալիստական շատ երկրների փորձից
ակնհայտ է գիտական կոմունիզմի հիմնադրի այս դատողությունների ո՛չ
միայն սոցիալ-տնտեսական, այլև քաղաքական վիթխարի կշիռը։ Չէ՞ որ
բաշխման հարաբերություններն ուղղակիորեն ու անմիջականորեն շոշափում
են բոլորի և յուրաքանչյուրի շահերը։ Բաշխման բնույթը, ըստ էության, սո-
ցիալիզմի ժամանակ հնարավոր սոցիալական հավասարության աստիճանի

ուրեմն սոցիալիզմը», պատասխան ստանալու համար ամենից առաջ դիմում է Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատություններին։ Սակայն արդեն չի կարելի սահմանափակվել միայն դրանով։ Այժմ «սոցիալիզմ» հասկացությունը չի կարող բացահայտվել այլ կերպ, քան հաշվի առնելով Սովետական Միության, մյուս եղբայրական երկրների ժողովուրդների ամենահարուստ պրակտիկ փորձը։ Այդ փորձը ցույց է տալիս, թե որքան բարդ են բազմաթիվ պրոբլեմները, որոնք ծառանում են սոցիալիստական ստեղծարար աշխատանքի ճանապարհին։ Բայց դա վկայում է նաև այն մասին, որ միայն սոցիալիզմն է ի վիճակի լուծելու հասարակական կեցության ամենաբարդ հարցերը։

Հենց սոցիալիզմն է վերացնում այն դարավոր պատնեշները, որոնք աշխատանքն անջատում են կուլտուրայից, ստեղծում է բանվորների, գյուղացիների, մտավորականության, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի բոլոր աշխատողների ամրակուռ դաշինք՝ բանվոր դասակարգի առաջատար դերով։ Նա աշխատավոր մասսաներին հաղորդակից է դարձնում գիտության ու տեխնիկայի, գրականության ու արվեստի նվաճումներին, ապահովում է մտավորականության ստեղծագործական գործունեության հասարակական աննախընթաց ճանաչում։ Հենց սոցիալիզմն է համերաշխ ընտանիքի մեջ համախմբում նախկինում ազգային թշնամությամբ միմյանցից անջատված ժողովուրդներին, ապահովում է շահագործողական կարգի ծնունդ հանդիսացող ազգային հարցի արդարացի լուծումը։ Հենց սոցիալիզմն է, որ, նպաստելով կյանքի ազգային ձևերի ծաղկմանը, ձևավորում է նաև միջազգային, միջպետական հարաբերությունների նոր տիպ, որոնք բացառում են ամեն մի անիրավահավասարություն, հիմնված են եղբայրական համագործակցության և փոխօգնության վրա։

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի ավարտմամբ, նոր, սոցիալիստական կացութաձևի ամրապնդմամբ հաղթահարվում են ամենասուր սոցիալական բախումները հասարակության մեջ, որոնց հիմքում, վերջին հաշվով, ընկած է նրա պառակտումը թշնամական դասակարգերի։ Այս հետևությունը, սակայն, ընդհանուր ոչինչ չունի այն պարզունակացված, քաղաքականապես միամիտ պատկերացման հետ, թե իբր սոցիալիզմը փրկություն է բերում բոլոր հակասություններից ու տարաձայնություններից, կենցաղային ամեն տեսակ անկարգություններից։ Ի դեպ ասած, այդ պատկերացումը յուրովի շահագործում են նաև մեր գաղափարական հակառակորդները, երբ փորձում են արատավորել նոր կարգը, մատնանշելով, որ այդ կարգում ևս մարդկանց կյանքում կան և՛ դժվարություններ, և՛ հուսախաբություններ, և՛ նորի երբեմն շատ դժվարին պայքար հնի դեմ։

Այո՛, մենք ունենք և՛ հակասություններ, և՛ դժվարություններ։ Կարծել, թե հնարավոր է զարգացման ինչ-որ մի այլ ընթացք, նշանակում է շեղվել ռեալության հուսալի, թեկուզ երբեմն նաև դաժան հողից, կապերը խզել մարքսիստական դիալեկտիկայի տարրական սկզբունքներից։ Հենվելով Մարքսի ուսմունքի վրա, տեսական առումով այդ հարցը պարզանել է Լենինը։ «Հակամարտությունը և հակասությունը,— գրել է նա,— բոլորովին նույն բանը չեն։ Առաջինը կանհետանա, երկրորդը կմնա սոցիալիզմի օրոք» (Ленинский сборник, XI, стр. 357)։ Այժմ այդ դրույթը հաստատված է պրակտիկայով։ Այստեղից, սակայն, չի հետևում, որ կարելի է անտեսել ոչ հակամարտ հակասությունները, անտեսել դրանք քաղաքականության մեջ։ Կյանքը սովորեցնում է, որ նման անուշադրության դեպքում իրենց էությամբ հակամարտ չհանդիսացող հակասությունները ևս կարող են լուրջ բախումներ ծնել։ Գործի մյուս և կարևորագույն կողմն այն է, որ ճիշտ օգտագործվի սոցիալիզմի հակասությունները որպես նրա վերընթաց զարգացման աղբյուր և խթան։

Մեր փորձը ցույց է տալիս, որ սոցիալիստական շինարարության հաջողությունները ձեռք են բերվում այն ժամանակ, երբ կառավարող կոմունիստական կուսակցության քաղաքականությունը հենվում է գիտական ամուր հիմքի վրա։ Մարքս-լենինյան գիտության, նրա ստեղծագործական զարգացման ամեն մի թերագնահատում, նրա խնդիրների նեղ պրագմատիկական մեկնաբանումը, տեսության հիմնարար պրոբլեմների անտեսումը, կոնյունկտուր-



շչինայի ճնշիչ ազդեցությունը կամ սխոլաստիկ տեսական մարզանքները հղի են քաղաքական և գաղափարախոսական լուրջ հետևանքներով։ Փորձը, պրակտիկան բազմիցս հաստատել են լենինյան այն ցուցումի ճշմարտացիությունը, որ «ով ձեռք է զարկում մասնավոր հարցերին՝ առանց ընդհանուր հարցերը նախապես լուծելու, նա անխուսափելիորեն ամեն քայլափոխում իր համար անգիտակցորեն «դեմ է առնելու» այդ ընդհանուր հարցերին։ Իսկ կուրորեն յուրաքանչյուր մասնավոր դեպքում դրանց դեմ առնել՝ նշանակում է իր քաղաքականությունը դատապարտել վատթար տատանումների ու անսկզբունքայնության» (ԵԼԺ, հ. 15, էջ 451)։

ՍՄԿԿ-ն մեծ նշանակություն է տալիս մարքսիզմ-լենինիզմի տեսության զարգացմանը, ինչպես այդ պահանջում է ինքը՝ նրա ստեղծագործական էությունը։ Դա կենսականորեն անհրաժեշտ է մեր գործնական խնդիրները լուծելու համար։ Մենք, օրինակ, ավելի ու ավելի ենք զգում լուրջ հետազոտությունների պահանջը սոցիալիզմի քաղաքատնտեսության բնագավառում։ Այստեղ ևս մեր գիտության համար տնտեսական կյանքի երևույթների էության մեջ խորապես թափանցելու մշտավառ օրինակ է եղել ու մնում է Մարքսի Կապիտալը։

Տեսական իմաստավորման համար վիթխարի նյութ է տալիս սոցիալիզմի եղբայրական երկրների բազմապիսի, ոչ բոլոր բաներում համընկնող փորձը։ Այս կապակցությամբ չի կարելի չհիշել լենինյան խոսքերն այն մասին, որ «միայն մի շարք փորձերի միջոցով,— որոնցից յուրաքանչյուրն առանձին վերցրած միակողմանի կլինի, որոշ անհամապատասխանություն կունենա,— բոլոր երկրների պրոլետարների հեղափոխական համագործակցությամբ կըստեղծվի ամբողջական սոցիալիզմը» (ԵԼԺ, հ. 36, էջ 376)։ Այս խնդիրը մեր օրերում գործնականորեն լուծվում է երկրագնդի ընդարձակ տարածություններում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի շրջանակներում, որը դարձել է մարդկության սոցիալական առաջընթացի որոշիչ գործոն։ Եվ լուծվում է այն սկզբունքային ուղղությամբ, որ կանխատեսել էր Մարքսը։

ԼԵՆԻՆԸ ՀԱՃԱԽ ԱՍՈՒՄ ԷՐ, որ իր ողջ գործունեությունն ինքը շարունակ ստուգում է Մարքսի հետ։ Մարքսի, Էնգելսի, Լենինի հետ է ստուգում իր յուրաքանչյուր քայլը նաև ՍՄԿԿ-ն։

Ստուգել Մարքսի հետ, մարքսիզմ-լենինիզմի հետ ամենևին չի նշանակում հարաշարժ կյանքը մեխանիկորեն «բաղդատել» այս կամ այն ֆորմուլայի հետ։ Մենք մեր ուսուցիչների բոլորովին անպետք հետևորդները կլինեինք, եթե բավարարվեինք նրանց հայտնագործած ճշմարտությունների կրկնությամբ, ապավինեինք մի անգամ սերտած ցիտատների մոգական ուժին։

Մարքսիզմը դոգմա չէ, այլ գործողության կենդանի ուղեցույց, այն բարդ խնդիրների վրա ինքնուրույն աշխատանքի ուղեցույց, որ մեր առջև դնում է պատմության յուրաքանչյուր նոր շրջադարձ։ Եվ կյանքից ետ չմնալու համար կոմունիստները պետք է բոլոր ուղղություններով առաջ մղեն և հարստացնեն Մարքսի ուսմունքը, պրակտիկայում ստեղծագործաբար կիրառեն նրա մշակած մատերիալիստական դիալեկտիկայի մեթոդը, որն իրավամբ կոչվում է մարքսիզմի կենդանի հոգի։ Միայն այդպիսի վերաբերմունքը մեր թանկագին գաղափարական ժառանգությանը, որի օրինակը տվել է Լենինը, հեղափոխական պրակտիկայի ներգործությամբ հեղափոխական տեսության այդպիսի անընդհատ ինքնանորացումը միայն մարքսիզմը դարձնում է իսկական գիտություն և հեղափոխական ստեղծագործության արվեստ։ Այդ է մարքսիզմ-լենինիզմի ուժի, նրա անթառամ թարմության գաղտնիքը։

Երբեմն խոսակցություններ ենք լսում այն մասին, թե իբր հասարակական կյանքի նոր երևույթները «չեն ներկայվում» մարքսիզմ-լենինիզմի կոնցեպցիայի մեջ, թե այն իբր «ճգնաժամ» է ապրում և իբր հարկավոր է այն «վերակենդանացնել» արևմտյան սոցիոլոգիայից, փիլիսոփայությունից կամ քաղաքականությունից քաղված գաղափարների ներարկումով։ Բանը, սակայն, այստեղ մարքսիզմի կարծեցյալ «ճգնաժամը» չէ։ Բանն այստեղ այն է, որ





իրենց մարքսիստներ հորջորջող որոշ տեսաբաններ անընդունակ են բարձրանալու մինչև Մարքսի, Էնգելսի, Լենինի տեսական մտածողության իսկական մասշտաբները, չեն կարողանում կոնկրետ հարցերի կոնկրետ ուսումնասիրման պրոցեսում կիրառել նրանց ուսմունքի ինտելեկտուալ վիթխարի ուժը։ Ավելորդ չէ ավելացնել, որ բուրժուական ոչ քիչ տեսաբաններ փիլիսոփայության, սոցիոլոգիայի, քաղաքատնտեսության բնագավառում մեծ մասամբ անուն են հանել նրանով, որ զբաղվել են մարքսիստական գաղափարներն իրենց հարմար ձևով շուռ տալով։

Կոմունիստներին վայել չէ գայթակղվել Մարքսին ամեն տեսակ «բարեփոխողների» կծու արտահայտություններով, կառչել բուրժուական գիտության ֆաբրիկատներից։ Ոչ թե ողողահարել մարքս-լենինյան ուսմունքը, այլ, ընդհակառակը, պայքարել նրա անաղարտության համար, ստեղծագործաբար զարգացնել այն— ահա նոր պրոբլեմները ճանաչելու և լուծելու ուղին։ Եվ միայն այդպիսի մոտեցումն է համապատասխանում մեր ուսմունքի ավանդույթների ոգուն, կոմունիստական շարժման պահանջներին։

Մենք՝ սովետական կոմունիստներս, հպարտանում ենք նրանով, որ պատկանում ենք համաշխարհային քաղաքակրթության ողջ պատմության մեջ ամենաազդեցիկ գաղափարական հոսանքին՝ մարքսիզմ-լենինիզմին։ Բաց լինելով ամենայն լավի, առաջավորի համար, որ կա ժամանակակից գիտության և կուլտուրայի մեջ, այսօր նա գտնվում է աշխարհի հոգևոր կյանքի կենտրոնում, տիրում է միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց մտքերին։ Դա ողջ մարդկությունն ազատագրող, վեր բարձրացող դասակարգի գաղափարական հավատամքն է։ Դա սոցիալական լավատեսության փիլիսոփայությունն է, ներկայի ու ապագայի փիլիսոփայությունը։

Մենք այժմ մեծ տարածություն ենք անցել աշխարհի սոցիալական նորացման ուղիով, բանվոր դասակարգի հեղափոխական նպատակների ու իդեալների իրականացման ուղիով։ Նոր տեսք է ստացել երկրագնդի քաղաքական քարտեզը։ Խոշորագույն հայտնագործություններ է կատարել գիտությունը, ապշեցուցիչ նվաճումներ է ձեռք բերել տեխնիկան։ Դրա հետ մեկտեղ մարդկության համար ծագել են բազմաթիվ նոր, այդ թվում շատ բարդ հոգսեր։ Հիմնավոր են նրա տագնապները, որոնք կապված են հումքային, էներգետիկ, պարենային, էկոլոգիական և համընդհանուր մասշտաբի ուրիշ պրոբլեմների սրման հետ։ Եվ ամենագլխավորը, որ այսօր հուզում է ժողովուրդներին, խաղաղությունը պահպանելու, ջերմամիջուկային աղետը կանխելու անհրաժեշտությունն է։ Միջազգային պլանով դրանից ավելի կարևոր ոչինչ չկա մեր կուսակցության, սովետական պետության, մոլորակի բոլոր ժողովուրդների համար։

Խորապես ըմբռնել ժամանակակից աշխարհի բոլոր բարդությունները, կազմակերպել ու ղեկավարել բանվոր դասակարգի, աշխատանքի բոլոր մարդկանց հեղափոխական սոցիալ-պատմական ստեղծագործությունը— այսպիսին է այն վիթխարի խնդիրը, որ այսօր լուծում են մարքսիզմ-լենինիզմի տեսությունը և մարդկության առաջընթացի համար մղվող պայքարի պրակտիկան։ Այն խնդիրը, որ իր առջև, իր գաղափարական ու քաղաքական համախոհների ու հետևորդների առջև դրել է Կարլ Մարքսը,— բացատրել և փոխել աշխարհը։

«Коммунист», № 3, 1983

---

# ՄԵՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳԼԽԱՎՈՐ ՕՂԱԿԸ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ հանրություն է, որի կենսագործունեության կարևոր նախադրյալներից է կարգապահությունը։ Վերջինս գոյավորվել է մարդկանց համատեղ աշխատանքի պրոցեսում իբրև անհրաժեշտություն։

Հակամարտ դասակարգային հասարակությունում կարգապահությունը ձեռք է բերել դասակարգային բնույթ, դառնալով սեփականատերերի իշխանության պահպանման միջոց։ Հակամարտ հասարակությունում կարգապահության կիրառման միջոցներն են հարկադրանքը, հնազանդեցումը, սոցիալական վախը, որտեղ ընչազուրկներին հետապնդում են մտրակն ու սովը։ Տնտեսական ու արտատնտեսական հարկադրանքը բուրժուազիայի ձեռքում վճռական միջոց է իրեն հարկավոր կանոնակարգ պահպանելու համար։ Կապիտալի աշխարհում կարգապահությունը հակասում է ժողովրդական զանգվածների շահերին և ճիշտ ընկալվող հասարակական պարտքի պահանջներին։ Այդ են վկայում կապիտալիստական պետություններում գործող ռեակցիոն օրենսդրությունները։

Կապիտալիստական հասարակարգի դեմ մղվող պայքարում բանվոր դասակարգը մշակել է իր հեղափոխական կարգապահությունը, որի սկզբունքները բխում են նրա սոցիալական նպատակներից։ Սոցիալիստական կարգապահության հաստատման օբյեկտիվ նախադրյալը նոր հասարակական հարաբերությունների ձևավորումն է։

Սոցիալիզմը ժողովրդական զանգվածների ստեղծագործության արդյունք է, որը հիմնվում է աշխատավորների գիտակցական կարգապահության վրա։ Սոցիալիզմի օրոք հասարակության սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնությունը ծնում է կարգապահության սոցիալիստական հարաբերություններ։

Սոցիալիստական հասարակությունում կարգապահությունը հիմնված է աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի վրա՝ որպես պատվի, արիության ու հերոսության գործ։ Միաժամանակ այստեղ կարգապահությունն ամրապնդվում է սոցիալիստական իրավունքով, որը պահպանվում է ոչ միայն պետության կողմից, այլև աշխատողների համատեղ ջանքերով, հասարակական կազմակերպությունների մասնակցությամբ։

Կարգապահության հարաբերությունները, դրանց դրսևորման էությունը և ձևերը պայմանավորվում են հասարակական, առաջին հերթին տնտեսական հարաբերություններով։ Աշխատանքի պրոցեսում միասնական կամքին խստիվ ենթարկվելը, կատարվող աշխատանքի կարգի ու ժամկետների մասին ժամանակին ու հստակ ցուցումները պարտադիր պայման են արտադրության նորմալ ընթացքի համար։

Սոցիալիստական կարգապահության հարաբերությունները մարդկանց վարքագիծը չեն ռեգլամենտավորում ըստ համապատասխան կանոնագրքերի (չնայած վերջիններս սահմանում են աշխատանքի կարգը), որոնց պատվիրանները գործում են ինչպես աշխատանքային կոլեկտիվներում, այնպես էլ հասարակության մեջ ամբողջությամբ վերցրած։ Սակայն միասնական աշխատակարգ բոլոր կազմակերպությունների համար անհնարին է և պետք չէ։ Անհնարին է և այն պարզ պատճառով, որ կազմակերպությունները, կոլեկտիվները բազմազան են ու բազմաբնույթ։ Իհարկե, տարբեր կոլեկտիվների աշխատակարգում ընդհանուր շատ բան կա. չէ որ նրանք հիմնվում են սոցիալիստական սկզբունքների վրա։ Սակայն այդ սկզբունքները ձևափոխվում են, ելնելով

այն առանձնահատկություններից, որոնք բնորոշ են տվյալ կոլեկտիվին։ Այսպես, տարբեր աշխատակարգեր են գործում տրանսպորտում և թեթև արդյունաբերության ձեռնարկություններում։

Հաստատել ու կատարյալ դարձնել տվյալ կազմակերպության համար օպտիմալ աշխատակարգ, նշանակում է պայմաններ ստեղծել սոցիալիստական կարգապահության հարաբերությունների արմատավորման համար։ Հարկ է նկատել, որ աշխատակարգն իրենից ներկայացնում է կարգապահության հարաբերությունների ձևական շրջանակներ, որոնք պետք է հագեցնել ռեալ, կենսական բովանդակությամբ։ Կարևոր է միջոցներ ձեռնարկել, որպեսզի մարդիկ յուրացնեն ոչ միայն աշխատակարգի պահանջները, այլև դրանց գիտակցաբար հետևեն, դրսևորելով ստեղծագործական նախաձեռնություն։ Կարևոր է, որ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ լավ հասկանա, թե կազմակերպությունում հաստատված աշխատակարգը ոչ միայն նպատակահարմար է, այլև օբյեկտիվորեն անհրաժեշտ։

Սոցիալիստական կարգապահությունը ենթադրում է ոչ միայն սահմանված կարգուկանոնի պահպանումը ամեն մի աշխատողի կողմից, այլև նրա պատասխանատվությունը կոլեկտիվի, հասարակության հանդեպ, ինչպես և վերջիններիս վերաբերմունքը մարդու նկատմամբ, հարգանքը նրա իրավունքների ու ազատությունների հանդեպ։

Հատկապես կարևոր է աշխատանքի մասին օրենսդրության փոխադարձ պահպանումը։ Չէ որ աշխատանքն է մարդու ունակությունների, գիտելիքների ներդրման հիմնական ոլորտը, հասարակության մեջ նրա տեղի ու դերի գլխավոր որոշիչը, նրա հասարակական հեղինակությունը, նրա բարեկեցության հիմնական աղբյուրը։ Այլ կերպ ասած, աշխատանքը մարդու կենսագործունեության հիմնական դրսևորումն է, ոլորտ, որտեղ անմիջականորեն զուգակցվում են անհատի ու հասարակության արմատական շահերը։ Մյուս կողմից, աշխատանքի ոլորտում են առաջին հերթին բավարարվում հասարակության պահանջները, անմիջականորեն իրականացվում են հասարակական նպատակները, պլանները, խնդիրները։ Հետևաբար, աշխատանքի մարզում իրավունքների ու պարտականությունների փոխադարձ պահպանումն ունի առաջնակարգ նշանակություն։

Վերջին տարիներին հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական ու տնտեսական մարմինները զգալի աշխատանք են կատարել աշխատանքային օրենսդրության պահպանումն ապահովելու նպատակով, որը բանվոր-ծառայողներին հնարավորություն է ընձեռում առավել լիովին օգտագործելու իրենց իրավունքները հասարակության ու մարդու կենսագործունեության այդ կարևոր մարզում, նպաստում աշխատավորներին դաստիարակելու աշխատանքի, ժողովրդական ունեցվածքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի ոգով։ Այդուհանդերձ, առանձին ձեռնարկություններում, կազմակերպություններում ու հիմնարկություններում դեռևս անբավարար է իրականացվում հսկողությունը աշխատանքային օրենսդրության պահպանման առումով, կան քաղաքացիների աշխատանքային իրավունքների ու երաշխիքների, աշխատանքի վճարման կարգի խախտման փաստեր, անչափահասների ու կանանց իրավունքների անտեսում և այլն։ Միևնույն ժամանակ ոչ բոլոր տեղերում է համառ պայքար մղվում աշխատանքային կարգապահությունը ամրապնդելու, արտադրությունում անկազմակերպվածության դրսևորումները, գործալքումները, պարապուրդները և աշխատանքային ժամանակի այլ կորուստները վերացնելու նպատակով։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումում ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթում հատկապես նշվեց, որ երկրում մշակվել է գիտականորեն հիմնավորված տնտեսական քաղաքականություն, կիրառվում է արտադրության արդյունավետության բարձրացման, նրա ինտենսիվացման կուրս։ Բայց այդ ռելսերի վրա ժողովրդական տնտեսության փոխադրումը, արդյունավետության ուղղությամբ շրջադարձը դեռևս դանդաղ են կատարվում։ Աշխատանքի արտադրողականությունն աճում է այնպիսի տեմպերով, որոնք բավարար չի կարելի համարել։ Հումքային ու վերամշակող ճյուղերի զարգացման ապարե-



ղում տակավին մնում է անհամաձայնեցվածության պրոբլեմը։ Պլաններն առաջվա պես կատարվում են գերծախսումներով և արտադրական ծախքերի գնով։ Տնտեսական շատ ղեկավարներ վկայակոչելով էկոնոմիկան պետք է լինի խնայողական դրույթը, գործնականում շատ քիչ բան են անում այդ խնդրի լուծման համար։ Հավանաբար դեռևս շարունակվում են գործել իներցիայի ուժը, հնի սովորույթը։ Իսկ ոմանք էլ, երևի պարզապես չգիտեն, թե ինչպես ձեռնամուխ լինեն գործին։

Կուսակցությունը պահանջում է արագացնել էկոնոմիկայի ղեկավարման ամբողջ գործի՝ կառավարման, պլանավորման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման աշխատանքը։ Անհրաժեշտ է ստեղծել տնտեսական ու կազմակերպչական այնպիսի պայմաններ, որոնք խթանեն որակյալ, արտադրական աշխատանքը, նախաձեռնությունն ու ձեռներեցությունը։ Եվ, ընդհակառակն, վատ աշխատանքը, անգործունությունը, անպատասխանատվությունը պետք է ամենաանմիջական և անկասելի կերպով անդրադառնան աշխատողների թե՛ նյութական վարձատրության, թե՛ նրանց պաշտոնական դիրքի, թե՛ բարոյական հեղինակության վրա։ Վճռականապես արմատախիլ անել գերատեսչականությունը, տեղայնությունը։ Անհրաժեշտ է կանոն դարձնել, որ միևնույն հարցի վերաբերյալ ամեն մի նոր որոշում ընդունվի միայն այն ժամանակ, երբ կատարվել են անցյալ որոշումները կամ երևան են եկել ինչ-որ նոր հանգամանքներ։

Կարգապահությունը,— գրել է Վ. Ի. Լենինը,— ողջ տնտեսական շինարարության մեխն է։ Լենինյան ցուցումը հատկապես հրատապ է այսօր, երբ հսկայական չափով աճել են արտադրության, հասարակական կյանքի մասշտաբները, բարձրացել են մարդկանց, կոլեկտիվների փոխադարձ պատասխանատվությունը։

ՍՄԿԿ XXVI համագումարը, Կենտկոմի նոյեմբերյան պլենումը միջոցառումներ մշակեցին պլանների հետագա կատարելագործման, պլանային ու պայմանագրային կարգապահության ամրապնդման առումով։ Փակել բոլոր սողանցքները, որոնք դեռևս հնարավոր են դարձնում ապաշնորհ տնտեսավարներին լինել առաջավորների շարքերում, չնայած նրանք խախտել են պայմանագրային պարտականությունները։ Դրա համար պահանջվում է նյութական և բարոյական խթանման գործուն համակարգ, վերջինս, պլանային ու պայմանագրային կարգապահության խախտման դեպքում, զուգակցելով խիստ ու անխուսափելի պատժամիջոցների հետ։

Կարգապահության հարաբերություններն անխզելիորեն առնչվում են պատասխանատվության հարաբերությունների հետ։ Չէ որ կարգապահությունը ենթադրում է պատասխանատվություն այս կամ այն մարմնի նկատմամբ՝ դրա պահանջը չկատարելու դեպքում։ Միևնույն ժամանակ պատասխանատվության գիտակցումը մարդկանց կարգապահ է դարձնում։ Պատասխանատվությունն անհատի ու հասարակության, անհատի ու կոլեկտիվի, անհատների միջև հարաբերությունների ձևերից է։ Այդ հարաբերություններն առաջացել են այն պարագայում, երբ մարդը կյանքի պահպանման ու շարունակման համար ստիպված էր փոխհարաբերությունների մեջ մտնել ուրիշ մարդկանց, կոլեկտիվի, հասարակության հետ։ Այդ փոխգործողությունն ունի կոնկրետ պատմական բնույթ և պայմանավորված է հասարակական հարաբերությունների տիպով։

Պատասխանատվության հարաբերությունների ձևավորման գործում վճռական նշանակություն ունի աշխատանքի հասարակական բաժանումը, որն օբյեկտիվ հիմք է ծառայում մարդկանց փոխադարձ կապի ու գործողության համար։ Յուրաքանչյուր մարդու պատասխանատվությունը ուրիշի, կոլեկտիվի, հասարակության հանդեպ նրա արարքներին ու գործերին տալիս է հասարակայնորեն նշանակալի բնույթ։ Չէ որ ամեն մի անձի արարքներն ու գործերը էական են ոչ միայն իր համար, այլև ուրիշների, ողջ հասարակության համար։

Պատասխանատվության հարաբերությունները հասարակական կյանքում անհրաժեշտության ու ազատության դիալեկտիկայի արտահայտությունն են։ Ամեն մի մարդ ընդգրկված է պատճառահետևանքային բարդ համակարգում,

համահարթումը, չվերահսկվող լրացուցիչ վարձատրությունները, հավելագրումներն աշխատանքը զրկում են մարդկանց վրա բարոյապես ներազդելու հնարավորությունից: Նյութական խթանը, եթե այն հիմնավորված է, բովանդակում է բարոյական լիցք, իսկ աշխատանքային ներդրման արդարացի հասարակական գնահատականը հարուցում է խանդավառություն: Կուսակցության XXVI համագումարում նշվեց, որ սոցիալիզմի օրոք բաշխման գլխավոր չափանիշը կարող է լինել միայն աշխատանքը՝ նրա քանակն ու որակը: Փաստ է, սակայն, որ գործնականում միշտ չէ, որ այդպես է լինում: Ամեն տեսակ հավասարություն, ըստ էության, սոսկ աշխատանքի ներկայանալու համար, այլ ոչ նրա ռեալ արդյունքների դիմաց աշխատավարձ դուրս գրելը, չվաստակած պարգևավճարներ տալը՝ այդ ամենն անչափ վնասակար է անդրադառնում թե՛ արտադրական ցուցանիշների և թե մարդկանց հոգեբանության վրա:

Կուսակցությունը խնդիր է դրել, որ նյութական ու բարոյական խթանների համակարգը մշտապես և ամենուրեք ապահովի յուրաքանչյուրի աշխատանքային ներդրման արդարացի և օբյեկտիվ գնահատականը: Անհրաժեշտ է ամեն կերպ խրախուսել բարեխիղճ աշխատողներին, միանգամայն անպետք աշխատանքի դեպքում լավ ապրելու ոչ մի սողանցք չթողնել անբանների ու խոտանարարների համար: Իրոք, ով ուզում է ավելի լավ ապրել, նա պետք է ավելի շատ ու ավելի լավ աշխատի:

Մեր հանրապետության աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ, միահամուռ հավանություն տվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի որոշումներին, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի արտասանած ճառի բովանդակած դրույթներին ու հետևություններին: Նրանք վճռականություն հայտնեցին նոր բնագծեր նվաճել ընթացիկ հնգամյակի առանցքային տարում, ըստ ամենայնի ամրապնդել պետական ու աշխատանքային կարգապահությունը, հասնել արտադրության բարձր արդյունավետության: Սովետական Հայաստանում ջերմ արձագանք գտավ մոսկվացիների «Փառքն ու պատիվը՝ ըստ աշխատանքի» նախաձեռնությունը:

Աշխատանքային կոլեկտիվներում լայնորեն շարժում է ծավալվել բարձր պահանջկոտության և կազմակերպվածության մթնոլորտի ստեղծման համար, հնգամյակի պլանների հաջող կատարման ու կուսակցության XXVI համագումարի որոշումների կենսագործման ասպարեզում յուրաքանչյուր աշխատավորի պատասխանատվության բարձրացման համար: Հանրապետության աշխատավորները, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, ելնելով Հայաստանի արդյունաբերության ու գյուղատնտեսության տեղաբաշխումը և նրա զարգացման ուղղությունները կատարելագործելու ՀԿԿ Կենտկոմի հետևողական կուրսից, ընթացիկ տարվա համար ստանձնել են առավել պատասխանատու սոցիալիստական պարտավորություններ: Այդ խնդիրները հանգամանորեն վերլուծեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ Կենտկոմի 1982 թ. դեկտեմբերյան պլենումում:

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումներից, հանրապետության կուսակցական կազմակերպությունը խնդիր է դրել ամենուրեք իրականացնել խնայողություն ու տնտեսում, գործունեության բոլոր ասպարեզներում ուժեղացնել պայքարն աշխատանքային ու կատարողական կարգապահության ամրապնդման համար:

Այդուհանդերձ, իրողություն է, որ դեռևս արմատախիլ չեն արվել պլանային կարգապահության խախտման դեպքերը, պլանները տարեվերջ փոխադրելու և ապա դրանք նվազեցնելու պրակտիկան: Անբավարար է վիճակը կնքված պայմանագրերին և ստանձնած պարտավորություններին համապատասխան արտադրանքի մատակարարումների առաջադրանքների կատարման ասպարեզում: Դեռևս անբավարար են կատարվում կուսակցության ու կառավարության որոշումները վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողական ծախսման վերաբերյալ: Մեզանում տակավին կան արդյունաբերական ձեռնարկություններ, որտեղ գործալիքների ու աշխատանքային կարգապահու-



թյունը խախտողների շուրջ չի ստեղծվում բացասական հասարակական կարծիք:

Մոսկվայի հաստոցաշինարարների հետ հանդիպման ժամանակ կայացած զրույցում ընկեր Յու. Վ. Անդրոպովը հատկապես անդրադարձավ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի առաջադրած խնդիրներին: Նա նշեց, որ պլենումի որոշումները ջերմ արձագանք են գտել ամբողջ երկրում, բոլոր աշխատավորական կոլեկտիվներում: Պլենումում արծարծված հարցերը, իսկապես շոշափել են մարդկանց շահերը, որոնք միահամուռ պաշտպանում են երկրի էկոնոմիկայի հետագա զարգացմանը նպատակամղված կուսակցության որոշումները: Ընթացիկ հնգամյակի առանցքային տարում պետք է կատարել այն ամենը, ինչ չենք արել առաջին երկու տարում և աշխատել լրացնել բաց թողածը, պայմաններ ստեղծել հնգամյակի վերջին երկու տարում նորմալ աշխատանքի համար: Կարևոր է բարելավել աշխատանքի որակը, արագացնել դրա տեմպը, էժանացնել արտադրանքի արտադրությունը: Ահա այն անհետաձգելի խնդիրները, որ ծառացել են մեր առաջ: Որտե՞ղ է, Լենինի խոսքերով ասած, այն օղակը, որից պետք է բռնել ամբողջ շղթան դուրս քաշելու համար: Թեև չի կարելի ամեն ինչ հանգեցնել կարգապահության, այդուհանդերձ պետք է սկսել հենց դրանից: Փաստերը վկայում են, որ երկիրը միլիոնավոր մարդաժամեր է կորցնում արտադրությունից բացակայելու, ծխելադադարների, գործալքումների պատճառով: Ոմանք էլ անտարբեր են գործի նկատմամբ: Խնդիրն այն է, որ ամեն մի աշխատող կատարի իր արտադրական առաջադրանքը: Ինչ մնում է առաջավորներին, ապա սոսկ նրանց ջանքերով հարցը չի լուծվի: Հարկավոր է, որ յուրաքանչյուր ոք ամեն օր կատարի սահմանված առաջադրանքը: Միայն այդ դեպքում հնարավոր է հասնել նպատակին:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում յուրաքանչյուր աշխատողի աշխատանքային ակտիվության բարձրացման առանձնահատկություններից է կոլեկտիվի դերի ու ներազդման ուժեղացումը նրա յուրաքանչյուր անդամի վրա: Աշխատանքային կոլեկտիվում է ընթանում մարդու կյանքի զգալի մասը: Այստեղ է հղկվում նրա բնավորությունը, իրականացվում բարոյական ու աշխատանքային դաստիարակությունը: Աշխատանքային կարգապահության ամրապնդման գործում կոլեկտիվի ազդեցության արդյունավետությունը բացատրվում է նրանով, որ յուրաքանչյուրի աշխատանքը, նրա վերաբերմունքը իր պարտականությունների հանդեպ գործընկերների տեսադաշտում է, որոնք լավ գիտեն ցանկացած աշխատողին, նրա անհատական առանձնահատկությունները: Դրանով է բացատրվում, որ յուրաքանչյուր աշխատողի համար առանձնահատապես թանկ է ու պատվավոր կոլեկտիվի կարծիքը:

Հանրապետության տասնյակ հազարավոր բանվորներ, կոլտնտեսականներ, ինժեներատեխնիկական և գիտական աշխատողներ, ծառայողներ, շատ բրիգադների, տեղամասերի, արտադրամասերի, ֆերմաների, ձեռնարկությունների և կազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների կոլեկտիվներ բարձր պարտավորություններ են ստանձնել աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման, հումքի, նյութերի և էներգետիկ ռեսուրսների խնայողության, աշխատաժամանակի կորուստների կրճատման համար, աշխատանքային ու հասարակական կարգապահության խախտման յուրաքանչյուր դեպքի նկատմամբ անհանդուրժողականության մթնոլորտի ստեղծման համար:

Գործի նկատմամբ վերաբերմունքը մարդու բարոյական հասունության չափանիշն է: Կարևոր է ոչ միայն, որ ինքդ լավ աշխատես, այլ դրսևորես անհաշտվողականություն քո միջավայրի թերությունների նկատմամբ, բարձրացնես մարդկանց պահանջկոտությունը գործի նկատմամբ: Մարդու գործերի ու նրա վարքագծի մասին կարելի է դատել արդարացիորեն՝ համակողմանի վերլուծելով նրա արարքները, նշելով թերությունները, ցույց տալով դրանց վերացման ուղիները: Խիստ, բայց հարգալից ձևով արտահայտված կարգադրությունը կամ պահանջը միշտ հանգեցնում է դրական արդյունքի: Մարդիկ շատ զգայուն են արձագանքում ղեկավարի վարքագծին աշխատանքում, անձնական կյանքում և եթե կեղծիք են նկատում, չեն ներում: Ղեկավարի հատկանիշները

վերլուծելիս հարկավոր է հաշվի առնել աշխատանքի բնույթը: Տարբեր են կուսակցական աշխատողի և տնտեսավարի գործունեության ոճն ու մեթոդները: Ղեկավարը պետք է օժտված լինի բազմապիսի հատկանիշներով և կարողանա դրանք դրսևորել ըստ նպատակահարմարության: Չպետք է ձգտել ամեն ինչ անել (դա անհնարին է), այլ կարողանալ որոշել յուրաքանչյուր մասնագետի տեղը, նրա ֆունկցիաները, վստահել, հնարավորություն տալ ստեղծագործաբար աշխատելու, օգտագործել ենթակաների գիտելիքն ու փորձը: Ղեկավարը հեղինակություն նվաճում է ոչ թե ծառայողական դիրքով, այլ ընդհանուր գործին անձնուրաց նվիրումով, գիտելիքներով, ունակություններով, մարդկանց նկատմամբ ճիշտ վերաբերմունքով: Ղեկավարը պետք է դրսևորի և՛ մեղմություն ու զգայունություն, և՛ վճռականություն ու խստագույն պահանջկոտություն:

Գյուղատնտեսական արտադրության կազմակերպման հետագա կատարելագործման և աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցերը հանգամանորեն քննարկվեցին վերջերս կայացած համամիութենական և հանրապետական խորհրդակցություններում:

Իրենց պրակտիկ գործունեության մեջ գյուղական շրջկոմները և սկզբնական կուսկազմակերպությունները պետք է ղեկավարվեն «ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումների կատարման ուղղությամբ Կուստանայի մարզի «Կոմունիզմի ուղի» կոլտնտեսության կուսակցական կազմակերպության աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ բովանդակվող դրույթներով ու հետևություններով, որտեղ կոլտնտեսության կուսակցական կազմակերպության գործունեության խոր վերլուծության հիման վրա ցույց են տրված գյուղում կուսակցական աշխատանքի հետագա բարելավման ուղիները, նշված են գյուղատնտեսության աշխատանքի ծավալների ավելացման ռեսուրսները, առաջադրված են զարգացման ինտենսիվ ուղու վրա արտադրության փոխադրումն արագացնելու խնդիրները:

Տնտեսավարման արդի պայմաններում կուսակցությունը պահանջում է արմատավորել սկզբունքորեն նոր մեթոդներ և եղանակներ արտադրության կազմակերպման, հատկապես աշխատանքի վարձատրության բնագավառում: Այդ պրոբլեմի լուծման բանալին կոլտնտեսություններում ու սովխոզներում տնտհաշվարկի արագ ներդրումն է, աշխատանքի կազմակերպման ճիշտ վարձատրության կիրառումը:

Այս առնչությամբ կենսական կարևորություն է ստանում կոլեկտիվ կապալի կիրառումը: Կոլեկտիվ կապալով աշխատող տեղամասերի երկարամյա փորձը վկայում է, որ, գտնվելով միևնույն պայմաններում, նրանք միավոր տարածությունից սիստեմատիկ ստանում են 20—30 տոկոսով ավելի արդյունք: Նման կոլեկտիվներում նկատելիորեն բարձր է աշխատանքի արտադրողականությունը, ցածր է արտադրանքի ինքնարժեքը և, հետևաբար, անհամեմատ բարձր է ներդրումների փոխհատուցումը:

Արդի փուլում կուսակցության հետևողական ջանքերի իմաստը մեր կյանքի բոլոր բնագավառներում կազմակերպվածության, գործարարության, պլանային, պետական և աշխատանքային կարգապահության բարձրացումն է, մեր հսկայածավալ գործերում դեռևս չհաղթահարված թերություններից ու դժվարություններից ձերբազատվելը: Այդ ձեռնարկումները իրոք ունեն վիթխարի նշանակություն, որոնք ամրապնդում են սոցիալիստական ապրելակերպի հիմքերը:

---



# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՖՈՐՄԱՑԻԱՅԻ ԾԱԳՄԱՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏԵՍԱԿԱՆ-ՄԵԹՈԴԱԲԱՆԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Ց. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ**
ՍՍՀՄ ԳԱ թղթակից- անդամ

ՄԱՐԴԿԱՅԻՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆԸ հայտնի են զանազան ֆորմացիաներ՝ քաղաքակրթության մեկ տիպի առկայության պայմաններում, որը բնութագրվում է պրոգրեսի և ռեակցիայի միջև հակամարտությամբ:

Կոմունիստական ֆորմացիայի գոյացմամբ առաջանում է նաև կոմունիստական քաղաքակրթությունը, որոնք և դառնում են միևնույն կարգի հասկացություններ: Եվ քանի որ կոմունիզմը, Մարքսի ու Էնգելսի խոսքերով ասած, մարդկային ցեղի կազմակերպման վերջին և անշեղորեն զարգացող ձևն է, ապա այստեղից հետևում է, որ հասարակության ֆորմացիոն բաժանման ավարտի հետ միասին մարդկության իսկական պատմության հետագա զարգացումը կոմունիստականից բացի այլ քաղաքակրթություն չի գիտենալու:

Հետևաբար, «կոմունիստական ֆորմացիա» և «կոմունիստական քաղաքակրթություն» հասկացություններն առաջացման և զարգացման ժամանակով համընկնում են: Ըստ երևույթին, այդ պատճառով մեր գիտական շատ հրատարակումներում, այդ թվում և Սովետական մեծ հանրագիտարանում, չկա «կոմունիստական քաղաքակրթություն» տերմինը: Սակայն այդ հասկացությունը ճանապարհ է հարթում քաղաքական և գիտական գրականությունում: Եվ դա միանգամայն հասկանալի է, որովհետև «կոմունիստական ֆորմացիա» և «կոմունիստական քաղաքակրթություն» հասկացությունների միջև ընդհանուրից բացի կան նաև տարբերության նրբերանգներ:

Կոմունիստական ֆորմացիան, ինչպես և ցանկացած այլ ֆորմացիա, ներառում է հասարակության բոլոր կողմերը՝ հասարակական կեցությունն ու հասարակական գիտակցությունը, բազիսն ու վերնաշենքը, կենցաղը, ընտանիքը և այլն:

Իսկ ինչպիսի՞ն են կոմունիստական ֆորմացիայի զարգացման արմատական աղբյուրներն ու շարժիչ ուժերը: Այս հարցի պատասխանը մենք գտնում ենք մարքս-լենինյան գիտության ստեղծագործական զարգացման մեջ: Ինչպես հայտնի է, ցանկացած հասարակության, այդ թվում և կոմունիստական ֆորմացիայի, ամեն մի զարգացման արմատական աղբյուրը հանդիսանում են հակասությունները, դրանց բացահայտումն ու հաղթահարումը հնի և նորի միջև պայքարի ընթացքում: Հեգելը գրել է, որ հակասությունը «ամեն մի կենսականության ու բաբախման արմատն է», ամեն մի շարժման աղբյուրը: Նա շեշտում էր. «հակասությունը՝ ահա թե ինչն է իրոք շարժում աշխարհը, և ծիծաղելի է ասել, թե հակասությունը չի կարելի պատկերացնել» (Г. В. Ф. Гегель, Энциклопедия философских наук. М., 1974, т. I, стр. 280):

Կապիտալիստական հասարակությունը հեղափոխականորեն սոցիալիս-

* Սկիզբը տես «Լենինյան ուղիով», 1983 թ., № 2:

տականի վերափոխելու ընթացքում վերանում է վերջին հակամարտական ֆորմացիայի հակասությունը՝ արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր ձևի միջև եղած հակասությունը: Կոմունիստական ֆորմացիայի առաջացումով ներգործության լայն հնարավորություն ստացավ զարգացման նոր հիմնական հակասությունը՝ հանրային արտադրության անշեղ աճի և այդ հիման վրա առաջացած նոր հանրային և անձնական պահանջմունքների միջև հակասությունը: Զարգացման այդ արմատական աղբյուրից է բխում նոր հասարակարգի հիմնական նպատակը: Ընդհանրացնելով և զարգացնելով Մարքսի և Էնգելսի մտքերը ապագա հասարակության հիմնական նպատակի վերաբերյալ, Վ. Ի. Լենինը մեր կուսակցության ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ ծրագիրը մշակելիս շեշտում էր, որ այդ նպատակը հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցության և ազատ համակողմանի զարգացման ապահովումն է (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 6, էջ 293): Այս միտքը Լենինը շեշտել է նաև շատ այլ աշխատություններում ու ելույթներում: Մարքս-լենինյան այս գաղափարների շարունակությունն ու զարգացումն են ՍՄԿԿ-ի և սոցիալիստական ընկերակցության երկրների ծրագրային որոշումները ժողովրդական զանգվածների բարեկեցության անշեղ վերելքի վերաբերյալ՝ խարսխված ողջ ժողովրդական տնտեսության ինտենսիվացման վրա, արդի գիտատեխնիկական հեղափոխության բոլոր հասումների առավելագույն կիրառումով: Ողջ ժողովրդի բարեկեցության աճը յուրաքանչյուր մարդու բանական պահանջմունքների համակողմանի բավարարման և անհատի համակողմանի զարգացման հիմքն է:

Եթե առհասարակ հակամարտական, հատկապես կապիտալիստական հասարակության զարգացման աղբյուրը մարդու շահագործումն է մարդու կողմից, ապա նոր հասարակության զարգացման ակունքը աշխատանքի բոլոր մարդկանց փոխօգնությունն ու համագործակցությունն է: Մարդու կողմից մարդու կապիտալիստական շահագործումը ծնում է մրցակցություն՝ որպես զարգացման առանձնահատուկ խթան: Մրցակցությունը դեռևս չի սպառել կապիտալիստական զարգացումը խթանող իր հնարավորությունները: Ընդհակառակն, գործազուրկների մշտական բանակի հետ զուգակցված այն արագացնում է արտադրանքի որակի բարձրացումը:

Գիտական գրականությունում հաճախ նույնացվում են «զարգացման աղբյուրներ» և «զարգացման շարժիչ ուժեր» հասկացությունները: Եթե խստորեն մոտենանք, այս հասկացությունները թեպետև նույնատիպ են, բայց նույնական չեն:

Կոմունիստական ֆորմացիայի լինելիության ընթացքում, երբ վերանում են հակամարտությունները, ոչ հակամարտ հակասությունները հանդես են գալիս ոչ միայն որպես զարգացման համապարփակ աղբյուր, այլև ներազդման իրենց բնույթով ծնում են պատմության մեջ աննախադեպ զարգացման շարժիչ ուժեր: Դրանցից են հասարակության միաձույլ միասնության դրսևորման բոլոր ձևերը. սոցիալ-քաղաքական, գաղափարական, ինտերնացիոնալ, որը վառ կերպով դրսևորվում է ժողովուրդների անխախտ բարեկամության, սոցիալիստական հայրենասիրության մեջ: Բոլոր այս շարժիչ ուժերն իրենց ստեղծարար հզորությունը բացահայտել ու դրսևորել են ՍՍՀՄ առաջացման ու անկասելի զարգացման բոլոր փուլերում:

Նման շարժիչ ուժեր հայտնի չեն եղել մինչսոցիալիստական ֆորմացիաներին: Դրանք հատկանշական են միայն ծագող ու զարգացող կոմունիստական ֆորմացիային: Այստեղ դրսևորվում է նորը հասարակության առաջընթացում միասնության և հակասության հարաբերակցության դիալեկտիկայում: Հակասությունը, մնալով զարգացման բուն աղբյուրը, ծնում է այնպիսի անշեղորեն ամրապնդվող սոցիալական միասնություն, որը նոր հասարակության մեկ աստիճանից մյուս, դեպի ավելի բարձր աստիճան վերընթաց շարժման հզոր գործոնն ու շարժիչ ուժն է դառնում: Այստեղ ևս անխախտ է մնում միասնության հարաբերականության և հակասության բացարձակության վերաբերյալ դիալեկտիկայի սկզբունքը: Բայց եթե նախկին ֆորմացիաներում միասնության հարաբերականությունը նշանակում էր դրա պառակտումն ու քայքա-



յումը հակամարտական հակասությունների ազդեցության ներքո, ապա կոմունիստական ֆորմացիայի լինելիության պայմաններում միասնության հարաբերականությունը նշանակում է դրա զարգացման մշտակայությունը ռեալ գոյություն ունեցող և նոր առաջացող հակասությունների բացահայտման ու հաղթահարման հիման վրա:

Արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև հիմնական ընդհանուր սոցիոլոգիական հակասությունը լուծելիս առավելապես է ամրապնդվում համապատասխանությունն ու միասնությունը դրանց միջև: Դա արտահայտվում է ողջ հասարակական արտադրության կայուն և անընդհատ աճով, առանց կապիտալիստական հասարակությանը հատուկ անկումների և ճգնաժամերի, գոյություն ունեցող արտադրահարաբերությունների մշտապես կատարելագործման, և ոչ թե վերացման հիման վրա բազմաթիվ այլ տնտեսական ու սոցիալական պրոբլեմների հաջող լուծմամբ: Նույնիսկ հիմնական, նոր հասարակարգի համար առանձնահատուկ՝ արտադրության ձեռք բերված մակարդակի և պահանջմունքների անշեղ աճի միջև հակասության լուծման ընթացքում կատարելագործվում է օպտիմալ միասնությունը դրանց միջև: Դա նշանակում է, որ արտադրությունը պլանաչափորեն զարգանում է մարդկանց հարաճուն պահանջմունքները լիովին բավարարելու նպատակով, իսկ այդ պահանջմունքները պետք է աճեն բանականորեն, առանց արտադրությանը վնասելու:

Կոմունիստական ֆորմացիայի լինելիության պայմաններում հասարակական, կոլեկտիվ ու անձնական շահերի միջև առկա են միասնություն և հակասություններ: Այդ միասնության պահպանման և հետագա զարգացման նպատակով հակասությունները լուծվում են անձնական շահերը կոլեկտիվ, հասարակական շահերին ենթարկելով: Դա ապահովում է նոր հասարակության միասնությունն ու կազմակերպվածությունը և բացառում ամեն կարգի անարխիա:

Կոմունիզմի առաջին փուլի կառուցումն ու գործառնությունը տեղի է ունենում բոլոր աշխատավոր դասակարգերի միջև սոցիալ-քաղաքական միասնության ամրապնդման հիման վրա, աստիճանաբար հաղթահարելով գոյություն ունեցող ոչ հակամարտական հակասությունները, միջդասակարգային և ներդասակարգային տարբերությունները:

Կոմունիստական ֆորմացիայի լինելիության և զարգացման պայմաններում հատուկ և հարաճուն նշանակություն ունի ինտերնացիոնալի և ազգայինի դիալեկտիկան: Լենինյան այս սկզբունքը հաստատված է ՍՍՀՄ-ում սոցիալիստական ու կոմունիստական շինարարության փորձով, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացման ընթացքով, համաշխարհային կոմունիստական շարժման պատմությամբ: Այդ բազմակողմանի փորձը կրկին ու կրկին ուսուցանում է, որ հաղթանակն այնտեղ է, ուր պահպանվում է ինտերնացիոնալի և ազգայինի համապատասխանության լենինյան սկզբունքը: Եվ ընդհակառակը: Այնտեղ, ուր խախտվում է այս անսասան սկզբունքը, տեղի է ունենում ուղղակի նահանջ պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքից՝ այստեղից բխող բոլոր հետևանքներով, ի վնաս ոչ միայն կոմունիստական շարժման ընդհանուր շահերին, այլև յուրաքանչյուր երկրի ազգային շահերին:

Դեռևս II Ինտերնացիոնալի ժամանակաշրջանում պրոլետարական ինտերնացիոնալիզմից նահանջը կործանարար եղավ շատ սոցիալիստական կուսակցությունների համար: Բոլշևիկները, Լենինի գլխավորությամբ, առաջինը հաղթանակ տարան Հոկտեմբերյան հեղափոխությունում այն բանի շնորհիվ, որ նրանք տիրաբար բարձրացրեցին պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը: Հոկտեմբերյան հեղափոխության պատմական նշանակության և աշխարհում առաջին սոցիալիստական հասարակությունը ՍՍՀՄ-ում կառուցելու փորձի, խաղաղությունը պահպանելու գործում դրա վճռական դերի ժխտումը դարձել է բնորոշ հատկանիշ հակակոմունիստների, ռևիզիոնիստների համար, որոնք նենգափոխում են մարքսիզմ-լենինիզմի, ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականության սկզբունքները:

ռավարման նոր ընձյուղների, որոնք առաջանում են սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընթացքում հասարակական ու պետական հիմնական սկզբունքի՝ դեմոկրատական ցենտրալիզմի, համակողմանի ամրապնդման ու զարգացման բազայի վրա։ Կուսակցական ու պետական շինարարության այդ առաջատար սկզբունքի ստեղծագործական զարգացման ու հարստացման օրինակ է ցույց տալիս ՍՄԿԿ-ն։ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան և նոյեմբերյան պլենումների որոշումներն ուղղված են դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների զարգացման բազայի վրա տնտեսության ու ագրոարդյունաբերական կոմպլեքսի սիստեմների կառավարման բարելավմանը։

Անդրադառնալով այս հարցերին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովը շեշտեց. «Անհրաժեշտ է ստեղծել տնտեսական ու կազմակերպական այնպիսի պայմաններ, որոնք խթանեն որակյալ, արտադրողական աշխատանքը, նախաձեռնությունն ու ձեռներեցությունը։ Եվ, ընդհակառակը, վատ աշխատանքը, անգործությունը, անպատասխանատվությունը պետք է ամենաանմիջական և անկասելի կերպով անդրադառնան թե՛ աշխատողների նյութական վարձատրության, թե՛ նրանց պաշտոնական դիրքի, թե՛ բարոյական հեղինակության վրա։

Անհրաժեշտ է ուժեղացնել պատասխանատվությունը համապետական, համաժողովրդական շահերի պահպանման համար, վճռականապես արմատախիլ անել գերատեսչականությունն ու տեղայնությունը»։

ՍՍՀՄ-ի, որպես պատմության մեջ առաջին բազմազգ ֆեդերատիվ սոցիալիստական պետության, զարգացման հեռանկարներն անխզելիորեն կապված են ողջ կոմունիստական ֆորմացիայի հետագա լինելիության դիալեկտիկայի հետ։ Այդ կապն ունի բազում, փոխկապակցված ասպեկտներ, որոնք հանճարեղ կերպով կանխատեսված են մարքսիզմ-լենինիզմի դասականների կողմից, իրականացված են նոր հասարակության ստեղծման ու զարգացման ընթացքում։ Մարդկանց ապագա ոչ ազգային հանրությունների ստեղծման ճանապարհին բազմազգ պետություններում առաջանում և երկար ժամանակ զարգանում են մարդկանց նոր պատմական հանրություններ։ Բոլոր այս նոր պրոգրեսիվ միտումները հանգեցնելու են բոլոր սոցիալիստական ազգերի միասնության հետագա ամրապնդմանը, ազգեր, որոնք իրենց ծաղկման ու մերձեցման շնորհիվ, վերջին հաշվով, կմիավորվեն միասնական ոչ ազգային հանրության մեջ՝ կոմունիզմի վերջնական հաղթանակի պայմաններում, որը «պետք է հանդիսանա մարդկային ցեղի կազմակերպման վերջին ձևը» (К. Маркс, Ф. Энгельс, **Соч.**, II изд., т. 7, стр. 351)։ Կոմունիզմը կլինի մարդկային համակեցության կազմակերպման վերջին, բայց ոչ քարացած ձևը։ Ընդհակառակը, կոմունիզմի լիակատար հաղթանակով կսկսվի հասարակության բարձրագույն տիպի բոլոր կողմերի առավել արագ ու համակողմանի զարգացումը, դրա անցումը մեկ աստիճանից մյուսին, ավելի կատարյալին։

Դիալեկտիկան ուսուցանում է, որ անհաշտ հակամարտ հակասությունների վրա հիմնված հասարակությունը դասակարգերի պայքարի ընթացքում սոցիալական հեղափոխության միջոցով անցնում է իր հակադրությանը։ Այդպես է եղել անցյալում, այդպես էլ տեղի է ունենում այժմ, կապիտալիզմից սոցիալիզմին ու կոմունիզմին անցման դարաշրջանում։ Բայց նոր, հանրային սեփականության վրա հիմնված հասարակարգի պայմաններում զարգացման աղբյուր են ոչ հակամարտ հակասությունները, հատկապես դրա հիմնական հակասությունները։ Այդ հակասությունները կապահովեն կոմունիզմի առաջընթաց, վերընթաց զարգացումը՝ առանց դրա անցման իր հակադրությանը։

Այս խնդրի շուրջ բանավիճելիս մեր ընդդիմախոսների վերջին փաստարկը դիալեկտիկայի հիմնական օրենքի՝ հակադրությունների միասնության ու պայքարի ձևակերպումն է։ Բայց այս փաստարկի դեմ կա ստեղծագործական մարքս-լենինյան հակասությունների, որպես զարգացման աղբյուրի մասին ուսմունքի ոգով, պատասխանը։ Այստեղ չպետք է մոռանալ, որ բուն մարդկային գիտակցությունը զարգանում է հակասությունների հիման վրա։ Մի կողմից մարդկային գիտակցությունն ունակ է թափանցելու իրերի ու առարկաների խորքը, կանխատեսելու ապագան և առաջ ընկնելու դեպքերի զարգա-



ցումից։ Գիտակցության այս պրոգրեսիվ կողմը գիտության ստեղծագործական զարգացման իմացաբանական հիմքն է։

Մյուս կողմից, մարդկային գիտակցությանը հատուկ են պահպանողականության տարրեր, քարացածություն, զարգացող իրականությանը, նոր օբյեկտիվ ռեալությանն արդեն չհամապատասխանող այս կամ այն բանաձևերն ու հասկացությունները հավերժացնելու ձգտում։

Գիտակցության այս պահպանողական կողմը դոգմատիզմի իմացաբանական հիմքն է։

Մարդկային գիտակցության զարգացման մեջ այս ներքին հակասության հաղթահարման համար անհրաժեշտ է ամրապնդել այն, ինչ արդեն դարձել է անսասան սկզբունք և վերանայել ու ճշգրտել այն բանաձևումները, հետևություններն ու հասկացությունները, որոնք այլևս չեն համապատասխանում փոփոխված իրականությանը։ Լենինը սովորեցնում էր, որ մարքսիստական դոկտրինայի ճշմարտացիության բարձրագույն ու միակ չափանիշը դրա համապատասխանությունն է օբյեկտիվ աշխարհի հետ։

Եվ եթե դիալեկտիկայի հիմնական օրենքի ձևակերպումը— «հակադրությունների միասնությունն ու պայքարը»— լիովին համապատասխանում է մարդկության ողջ նախապատմությանը, ապա մարդկության իսկական պատմության վերջնական հաստատումը, երբ կոմունիզմը կհաղթանակի մեր ողջ մոլորակի վրա, ուժի մեջ կմտնի դիալեկտիկայի գլխավոր օրենքի առավել համընդհանուր ձևակերպումը, որ տրված է մարքսիզմի առաջին հասուն երկում՝ Փիլիսոփայության աղքատությունը գրքում։ Այստեղ Մարքսը գրել է, որ դասակարգերի հակամարտ հակասությունների ոչնչացումով սոցիալական էվոլյուցիաները կդադարեն քաղաքական հեղափոխությունների տեսք ընդունելուց։ Եվ կանխատեսելով մարդկության զարգացման ընթացքում այդ նոր դարաշրջանի հաստատման անկասելիությունը, Մարքսը դիալեկտիկայի էության այլ բանաձևում է տվել։

Դիալեկտիկամատերիալիստական մեթոդի ստեղծող Կ. Մարքսը գրել է. «Երկու փոխհակասական կողմերի գոյությունը, դրանց պայքարն ու դրանց միաձուլումը նոր կատեգորիայի մեջ կազմում են դիալեկտիկական շարժման էությունը» (К. Маркс, Ф. Энгельс, **Соч.**, т. 4, стр. 136)։

Զարգացնելով մարքսիզմի փիլիսոփայությունը, Վ. Ի. Լենինը բազմիցս խոսել է իրերի և առարկաների մեջ ներքին հակասական կողմերի ու միտումների մասին։ Իր Կարլ Մարքս աշխատությունում Վ. Ի. Լենինը տվել է հակասության առավել լրիվ սահմանումը, որպես տարբեր ուժերի ու միտումների բախում, որոնք ներգործում են տվյալ մարմնի վրա տվյալ երևույթի սահմաններում կամ հասարակության ներսում և հանդիսանում են զարգացման ներքին ազդակներ։ Դիալեկտիկայի արմատական տարրը, այնուհետև նշել է Վ. Ի. Լենինը, «բուն իրում առկա հակասությունն է», «ամեն մի երևույթում առկա հակասական միտումներն են»։ Նա գրել է. «Միասնականի երկատումը և դրա հակասական մասերի ճանաչողությունը դիալեկտիկայի էությունն է («էություններից» մեկը, հիմնական առանձնահատկություններից կամ գծերից մեկը, եթե ոչ հիմնականը)» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 29, էջ 387)։

Դիալեկտիկայի հիմնական օրենքի էության այս դասական սահմանումներում համապարփակը ոչ թե հակադրությունների պայքարն է, այլ հակասական կողմերի ու միտումների պայքարը։ Միայն որոշակի պատմական պայմաններում, դասակարգային պայքարի ժամանակաշրջանում հակասությունները սոցիալական հակադրությունների բնույթ են կրում։ Իսկ հասարակական հարաբերություններում սոցիալական հակադրություններից բացի այլ հակադրություններ չեն լինում։ Երբ անհետանում են սոցիալական հակադրությունները, մնում են ոչ հակամարտ հակասությունները։

Հետևաբար, ամեն մի հակադրություն հակասություն է, բայց ոչ ամեն հակասություն հակադրություն է։ Երբ վերանում են սոցիալական հակադրությունները, հասարակական հարաբերությունները ձեռք են բերում ոչ հակամարտ բնույթ։

Ինչպես հայտնի է, մարքսիզմը չգիտե հասարակությունում «ոչ հակա-

մարտ հակադրությունների» կատեգորիան։ Հասարակական հարաբերություններում կարող են լինել հակամարտ և ոչ հակամարտ հակասություններ։

Մարքսիզմ-լենինիզմի դասականները միշտ և բազմիցս գրել են, որ կոմունիստական հեղափոխությունը վերացնում է բոլոր հակադրությունները հասարակական հարաբերություններում։ Նրանց համար սոցիալական հակադրությունները և հակամարտությունը միևնույն կարգի հասկացություններ են։ Կյանքը հաստատում է գիտական կոմունիզմի հիմնադիրների այն հանճարեղ կանխատեսումները, թե ապագա հասարակությունում պետք է խոսել ոչ թե ոչ հակամարտ հակադրությունների կամ սոցիալական հակամարտությունների, այլ ոչ հակամարտ հակասությունների մասին։ Այս գաղափարը խորությամբ ու համառոտակի սահմանել է Վ. Ի. Լենինը։ Նա գրել է. «Հակամարտությունն ու հակասությունը բոլորովին նույն բանը չեն։ Առաջինը կանհետանա, երկրորդը կմնա սոցիալիզմի օրոք» (Ленинский сборник, XI, стр. 357)։

Հայտնի է, որ Հեգելը, ցանկանալով հավերժացնել հակամարտ կարգը հասարակական երևույթներում, լիովին նույնացնում էր հակասությունները հակադրությունների հետ։

Հեգելի մոտ բոլոր դիալեկտիկական կատեգորիաները ենթարկված էին այդ նպատակին, որը բխում էր նրա իդեալիստական սիստեմից։ Այլ կերպ մոտեցան այդ հարցին մարքսիզմ-լենինիզմի դասականները։ Այնտեղ, ուր խոսքը հակամարտ ֆորմացիաների կամ առհասարակ հակամարտությունների մասին է, նրանք դիտարկում են հակասությունները որպես հակադրություններ։ Բայց երբ մարքսիզմ-լենինիզմի դասականները տալիս են դիալեկտիկայի միջուկի էության առավել համապարփակ սահմանումը, որը պիտանի է նաև կոմունիզմի դարաշրջանի համար, նրանք խոսում են միայն հակասական կողմերի ու միտումների պայքարի մասին։ Եթե հետևողականորեն ղեկավարվելու լինենք դիալեկտիկայի էության առավել համապարփակ սահմանումով և համակողմանիորեն արտացոլենք առաջացող կոմունիստական ֆորմացիայի բնորոշ առանձնահատկությունները, ապա կարելի է դիալեկտիկայի հիմնական օրենքը մարքսիզմ-լենինիզմի դասականների ասույթների ոգուն լիովին համապատասխան ձևակերպել որպես «հակասական կողմերի ու միտումների միասնության ու պայքարի օրենք» կամ համառոտակի՝ որպես «հակասության օրենք»։

Այս ձևակերպումը հնարավորություն է ընձեռում բացահայտելու և ցույց տալու զարգացման ներքին աղբյուրը միասնական կոմունիստական հասարակարգի բոլոր ոլորտներում և, ամենից առաջ, սոցիալիստական արտադրաեղանակում, սոցիալիստական սեփականության երկու ձևերում, դասակարգային կառուցվածքում, ազգային հարաբերություններում, հոգևոր կյանքում։

Հասարակության գլխավոր ոլորտներում ներքին հակասությունների ժխտումը, ըստ էության, նշանակում է չընդունել սոցիալիստական հասարակության զարգացման օբյեկտիվ դիալեկտիկան։

«Հակասական կողմերի ու միտումների միասնությունն ու պայքարը» կամ «հակասության օրենք» բանաձևը, որպես դիալեկտիկայի միջուկի և էության առավել համապարփակ սահմանում, համապատասխանում է կոմունիզմի վերջնական հաղթանակի դարաշրջանին։

Այսպիսով, միայն ստեղծագործաբար ըմբռնելով և կիրառելով մատերիալիստական դիալեկտիկան՝ մարքսիզմ-լենինիզմի այդ հավերժ կենդանի հոգին և աշխարհի գիտական ճանաչման ու վերափոխման արմատական մեթոդաբանական հիմքը, կարելի է ճիշտ դիտարկել առաջին անգամ դեպի կոմունիզմ ուղի հարթող ՍՍՀՄ-ի սոցիալիստական պրակտիկան։

Մոսկվա

---

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀՈՒՄԱՆԻԶԱՑՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

**Վ. Ա. ՄԻՐԶՈՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ առաջընթացի յուրաքանչյուր փուլ իր որոշակի խնդիրներն է առաջադրում։ Հասուն սոցիալիզմի համար բնորոշ դարձավ սոցիալական զարգացման խնդիրների կարևորումը։ Կուսակցության սոցիալական ստրատեգիայի գլխավոր գիծը ժողովրդական տնտեսության արմատական շրջադարձն է դեպի սոցիալական հետագա զարգացման հետ կապված բազմապիսի հարցերի լուծումը։ Հատկապես ՍՄԿԿ XXVI համագումարը մեծ ուշադրություն հատկացրեց բուն սոցիալական խնդիրներին, ամենից առաջ մարդու բարեկեցության, ապրելակերպի, աշխատանքային գործունեության, հասարակական հարաբերությունների համակողմանի զարգացման հարցերին։

Անշուշտ, սովետական իշխանության առաջին իսկ օրերից մեր կուսակցությունն ու պետությունը իրենց գլխավոր խնդիրը համարել են հոգատարությունը աշխատանքի մարդու բարեկեցության բարձրացման, նրա զարգացման, սոցիալական արդարացի գնահատականի, աշխատանքային բարենպաստ պայմանների ապահովման նկատմամբ։ Այդ հոգատարության կոնկրետ դրսևորումը մեծապես պայմանավորված է առկա տնտեսական հնարավորություններով։ Սոցիալական խնդիրների առաջադրման հարցում մարքսիզմը ուտոպիստական և վոլյունտարիստական նպատակադրումներից տարբերվում է ամենից առաջ իր տնտեսական հիմնավորվածությամբ։ Հնարավո՞ր էր արդյոք ուղղակի հռչակել աշխատանքի բուն բովանդակության հարստացման անմիջական ծրագիր սոցիալիստական հասարակության այն փուլերում, երբ դեռ անհրաժեշտ էր վերացնել սովը, անգրագիտությունը, ինդուստրացնել երկրի տնտեսությունը, լուծել կենսական հրատապ նշանակություն ունեցող տնտեսական մի շարք խնդիրներ, ընդ որում լուծել բառիս բուն իմաստով անձնազոհ աշխատանքով։

Զարգացած սոցիալիզմի օրոք փոխվում են պայմանները, ընդլայնվում են հնարավորությունները։ Դա արձանագրվեց ՍՄԿԿ XXIV համագումարում. «Հարցը զգալիորեն ավելի լայն է դրվում՝ ստեղծել սովետական մարդկանց, բոլոր աշխատավորների ընդունակությունների, ստեղծագործական ակտիվության համակողմանի զարգացմանը նպաստող պայմաններ, այսինքն՝ զարգացնել հասարակության գլխավոր արտադրողական ուժերը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 54)։ Այս առումով ուշագրավ են կուսակցության XXVI համագումարի այն դրույթները, հատկապես այն բանի շեշտումը, թե կուսակցությունը և պետությունը ամեն ինչ արել և անում են, որ մարդկային աշխատանքը դարձնեն «ո՛չ միայն ավելի արտադրողական, այլև ավելի բովանդակալից, հետաքրքրական, ստեղծագործական», ձգտում են «մշտապես հարստացնել նրա բովանդակությունը, ուժեղացնել ստեղծագործական բնույթը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 93, 173)։ Սոցիալիզմի համար տնտեսական և տեխնիկական առաջընթացն ինքնանպատակ չէ, այլ բուն սոցիալիստական նպատակների իրականացման միջոց։ Տեխնիկատնտեսական և սոցիալական խնդիրների օրգանական կապը սոցիալիստական հասարակության բնորոշ գծերից է։ Անհնար է ապահովել բարեկեցության աճը, առանց ար-

սարակությունում կարող են գնահատվել իբրև խառնակիչներ։ Սակայն «երրորդ ալիքի» հասարակությունն առանց այդպիսիների չի կարող յոլա գնալ» (նույն տեղը, էջ 144, 403)։ Բայց ինչպե՞ս հասնել նման իմաստալից աշխատանքի։ Մի՞թե սոսկ ցանկությամբ ու պատրաստակամությամբ, սոսկ ցանկալի հռչակումով։ Ի՞նչ սոցիալ-տնտեսական և քաղաքական հիմք կա Թոֆլերի այն պնդման համար, թե ինդուստրիալ հասարակությանը բնորոշ «շուկայական բարոյականությունը», որը մարդուն գնահատում է ունեցվածքով, իր տեղը զիջելու է «աշխատանքային բարոյականությանը», ըստ որի կարևորն այն է, թե մարդն ինչ է անում։

Կապիտալիզմի սոցիալ-տնտեսական իրականությունն է, որ մերկացնում է «աշխատանքի հումանիզացման» տեսությունների անզորությունը։ Այդ իրականությունն է գիտատեխնիկական առաջընթացի հասումները ծառայեցնում, առաջին հերթին, արտադրամիջոցների տերերի՝ կապիտալիստների շահույթի ապահովմանը։ Այդ իրականությունն է ի չիք դարձնում իմաստալից աշխատանքով զբաղվելու հնարավորությունը, պատրաստակամությունը, ցանկալի ու պատասխանատու աշխատանքի ձգտումները։ Ուստի այդ իրականության վերափոխումն է աշխատանքի հումանիզացման գլխավոր պայմանը։

Այսպիսով, աշխատանքի հումանիզացումն իբրև առաջնահերթ սոցիալական խնդիր, որ ծառացած է ներկայիս քաղաքակրթության առջև, մերկացնում է կապիտալիստական հասարակության անհեռանկարայնությունը, նոր գիտատեխնիկական հնարավորությունները հանուն մարդու օգտագործելու նրա անզորությունը։ Հնարավոր չէ հումանիզացնել կապիտալիստական հասարակությունը, մանավանդ, երբ դա փորձում են անել լոկ ցուցանակը փոխելով՝ «ետկապիտալիստական» հասարակության տարբեր անվանումներով։

Ինչպես արդեն ասվեց, սոցիալիստական հասարակության համար աշխատանքի հումանիզացումը ոչ թե տեխնոլոգիապես, այլ բուն սոցիալական զարգացմամբ թելադրված խնդիր է։ Սոցիալիստական արտադրահարաբերությունները, տիրապետող իդեալներն ու նպատակները, աշխատանքի մարդու սոցիալական բարձր գնահատականը, գիտատեխնիկական և արտադրական առաջընթացի կողմնորոշումը դեպի մարդու շահերը և այլն, ապահովում են բոլոր անհրաժեշտ նախադրյալները՝ աշխատանքի հումանիզացումը իբրև հասարակական զարգացման կարևորագույն պրոբլեմ առաջադրելու համար։ Սոցիալիստական հասարակության էությունը մարդասիրությունն է։ Հասարակական բոլոր պրոցեսների, սոցիալական բոլոր հիմնարկությունների, հասարակական կյանքի կազմակերպման և կառավարման հումանիզացումը սոցիալիզմի համար ոչ թե արհեստական, արտաքուստ պարտադրված, այլ բնականոն զարգացում է։ Հատկապես զարգացած սոցիալիզմի հասարակությունը հնարավորություն ունի գիտատեխնիկական, տնտեսական, արտադրական առաջընթացը կողմնորոշելու դեպի բուն սոցիալական խնդիրների լուծումը։

Աշխատանքի հումանիզացումն անհնարին է առանց գիտատեխնիկական հեղափոխության խթանման, ծանր, որակավորում չպահանջող, միապաղաղ աշխատանքի եղած տեսակների վերացման, մարդուն վայել աշխատանքի պայմանների և դրա բուն բովանդակության բարեփոխման նպատակով գիտատեխնիկական հասումների նպատակամետ կիրառման։ Հասկանալի է և այն, որ այժմ աշխատանքի շատ տեսակների համար ինչպիսի սոցիալական միջոցառումներ էլ կիրառվեն, միևնույնն է, աշխատանքի հումանիզացման վերջնական նպատակը՝ աշխատանքի վերածումը մարդու համակողմանի զարգացման ասպարեզի, անհասանելի է առանց համապատասխան տեխնիկական, արտադրական հիմքի։ Այնուամենայնիվ, հարց է ծագում, թե որքանո՞վ են օգտագործվում եղած տեխնիկաարտադրական հնարավորությունները։ Արդյո՞ք միշտ են աշխատանքային անբարենպաստ պայմանները կամ աշխատանքից դժգոհությունը պատճառաբանված սոսկ օբյեկտիվ գործոններով։ Վերջիններիս հարկի և անհարկի շեշտադրումը արդյո՞ք միշտ է արդարացված, թե՞ քողարկում է կազմակերպչական և այլ թերությունները։ Մեր թվում է, որ լրիվ հիմք կա հետևյալ եզրակացության համար. «Ակնհայտ է, որ պետք է ավելի քիչ արդարանալ աշխատանքային ռեսուրսների պակասով և ավելի լավ օգ-



տագործել երկրում եղած պոտենցիալը։ Հաջողության բանալին այստեղ աշ-
խատանքային կարգապահության, մարդկանց նկատմամբ պահանջկոտության
բարձրացումն է, հանձնարարված գործի համար պատասխանատվության դաս-
տիարակումը ինչպես արտադրությունում, այնպես էլ կառավարչական օղա-
կում։ Չէ որ, եթե գործարանը ամսական ծրագրի 60—70 տոկոսը կատարում
է վերջին տասնօրյակի ընթացքում, նշանակում է այդ ձեռնարկությունում
զգալիորեն ավելի մարդիկ կան, քան անհրաժեշտ է ռիթմիկ աշխատանքի
համար» («Правда», 5 апреля 1982 г.)։ Ի դեպ, այս նույն օրինակը պար-
զորոշ կերպով ցույց է տալիս, թե ինչպիսի հսկայական ռեզերվներով է օժտ-
ված արտադրության «մարդկային գործոնը» և թե որքան վատ է այն օգտա-
գործվում։ Այստեղ մենք նկատի ունենք մարդու աշխատանքային վարքի կազ-
մակերպման սոցիալ-հոգեբանական ասպեկտները, նախ և առաջ աշխատանքի
նկատմամբ մարդու վերաբերմունքը, միջանձնային հարաբերությունները, կո-
լեկտիվի ղեկավարման հարցերը և այլն։
Մի շարք սոցիոլոգիական հետազոտություններ վկայում են, որ սովետա-
կան մարդկանց համար աշխատանքը դադարել է լինել լոկ ապրուստի միջոց
և դարձել կենսական պահանջմունք, իսկ աշխատանքի բովանդակալիության
հանգամանքը նույնքան մեծ դեր ունի, հատկապես երիտասարդության հա-
մար, որքան և աշխատավարձի պարագան։ Սոցիալիզմի պայմաններում աշ-
խատանքի նկատմամբ վերաբերմունքի համար հատկանշական է այն, որ անձ-
նական նյութական շահագրգռվածությունն անբաժան է աշխատանքի կենսա-
կան իմաստի ըմբռնման, մասնագիտության հասարակական հեղինակության
հանգամանքներից։ Աշխատանքի մարդու ինքնուրույնության, ինքնակառա-
վարման, գիտակից վերաբերմունքի օրինակ են այն բանվորները, որոնք աշ-
խատում են իրենց անձնական մակնիշով. տեխնիկական վերահսկումը վերջին
հաշվով արտաքին բան է աշխատողի համար, իսկ իրոք աշխատասեր, բա-
րեխիղճ մարդը դրա կարիքը չունի, նա պարզապես չի կարող վատ աշխատել։
Մարդու կողմից աշխատանքի կենսական իմաստի ըմբռնումը նրա պա-
հանջմունքների, իդեալների, հասարակության նկատմամբ վերաբերմունքի լա-
վագույն ցուցանիշն է։ Եթե մարդն աշխատանքում է գտնում իր ինքնահաս-
տատումը, իրեն և մյուսներին գնահատում է ամենից առաջ ըստ աշխատան-
քի, ապա նա կուլ չի գնա սպառողական հոգեբանությանը, կենցաղային քաղ-
քենիկին։ Իրերը, կահ-կարասին, հարմարավետ կենցաղը, բարեկեցիկ կյանքը
կմնան միջոց, այլ ոչ գերագույն արժույթ, կյանքի հիմնական իմաստ։ Իսկ
եթե իր սոցիալական արժույթի, սեփական «ես»-ի գնահատումը մարդը չի
տեսնում աշխատանքի ոլորտում, ապա ինքնահաստատման միջոցներ են դառ-
նում անհագուրդ սպառումը, սոցիալապես անընդունելի վարքը և այլն։ Սպա-
ռողական հոգեբանությունը աշխատանքի կենսական իմաստի, կոմունիստական
իդեալի բացահայտ հակոտնյան է և խորապես բացասաբար է անդրադառնում
սոցիալիստական ողջ ապրելակերպի վրա։
Նյութական բարեկեցության ձգտումը ինքնին, իհարկե, դեռ բացասական
երևույթ չէ։ Զպետք է մոռանալ, որ առհասարակ փոխվել են մարդկանց պատ-
կերացումները բարեկեցիկ կյանքի մասին, ինչպես և նման կյանքի չափանիշ-
ները։ Բացի այդ, նյութական պայմանների բարելավումով ընդլայնվում են
նաև հոգևոր պահանջմունքների բավարարման հնարավորությունները։ Նյու-
թական ապահովվածությունը, բարեկեցության վերելքը ինքնին օբյեկտիվ
պայմաններ են ստեղծում աշխատանքի բովանդակության նկատմամբ ավելի
ընտրողական վերաբերմունքի, ըստ նախասիրությունների մասնագիտություն
ընտրելու համար։ Նույնիսկ զուտ նյութական բարեկեցության ձգտումը որո-
շակի սահմաններում կարող է նպաստել նաև աշխատանքի նկատմամբ դրա-
կան վերաբերմունքի ձևավորմանը, թեև, հասկանալի է, միմիայն այդ դրդա-
պատճառի առկայությամբ աշխատանքը որպես կանոն ընկալվում է իբրև մի-
ջոց, այլ ոչ նպատակ, իբրև ինքնին կենսական արժեք։ Այնուամենայնիվ,
նյութական բարեկեցության բարելավումը, նյութական հնարավորությունների
աճը կարող են ուղեկցվել մանրբուրժուական, սպառողական հոգեբանության
աշխուժացմամբ, եթե չի ապահովվում մարդկանց գաղափարական, բարոյա-

կան զարգացածության համապատասխան մակարդակը։ Եթե մարդու մոտ
գերակշռում են ցածր կարգի պահանջմունքները, ապա նյութական բարեկեցու-
թյան վերելքը ուղեկցվում է բացասական հետևանքներով. նյութական միջոց-
ների ընդլայնումը ինքնին չի հանգեցնում հոգևոր պահանջմունքների, մարդու
հոգևոր կյանքի վեհացմանը։ Երբ սպառումը վերածվում է ինքնանպատակի,
որին փաստորեն ենթարկվում են անհատի ձգտումներն ու իդեալները, դա ար-
դեն ոչ թե բնական, բանական պահանջմունք է, այլ մոլուցք։ Նման երևույթ-
ները, ինչպես ընդունված է ասել, անցյալի վերապրուկներն են։ Դրանք, իրոք,
անցյալն են բնութագրում, որովհետև հատկապես շահագործողական հասա-
րակություններն են ծնում ու սնում մասնավոր սեփականատիրական հոգեբա-
նությունը, մարդու հասարակական արժութավորումը ըստ ունեցվածքի կամ
ծագման, նսեմացնելով աշխատանքի դերը։
Մեր հասարակությունը, ելնելով որոշ մասնագիտությունների սուր կարի-
քից, դրանց կադրերի համար ստեղծում է լրացուցիչ արտոնություններ և առա-
վելություններ, խթանում բարձր աշխատավարձով և այլն։ Նման քաղաքակա-
նությունը թելադրված է տնտեսական անհրաժեշտությամբ, սակայն որոշ
բարդություններ է ստեղծում։
Ակնհայտորեն ուժեղանում է աշխատանքի նկատմամբ պրագմատիկական
մոտեցումը՝ ի հաշիվ աշխատանքի բուն բովանդակության արժեքի, հասա-
րակական օգտակարության, աշխատանքային գործունեության կենսական
իմաստի նսեմացման։ Դրանում համոզվելու համար առանձին հետազոտու-
թյուններ պետք էլ չեն. բավական է համեմատել ընդունելության քննություն-
ների շրջանում տարբեր ֆակուլտետների դիմորդների թվերը։ Առհասարակ,
աշխատավարձի կարգավորումը խիստ նուրբ մոտեցում է պահանջում, խորա-
պես մտածված քաղաքականություն, հատկապես մեր հասարակության մեջ,
որտեղ աշխատավարձը հսկայական դաստիարակչական նշանակություն ունի։
Թե՛ գաղափարական-դաստիարակչական և թե՛ գիտատեխնիկական հետագա
առաջընթացի համար անհրաժեշտ ինտելեկտուալ պոտենցիալի ապահովման
տեսակետից մեզ այսօր չի կարող չանհանգստացնել այն զանգվածային ար-
տահոսքը, որ նկատվում է որակյալ, սակայն ցածր վարձատրվող աշխատանքի
ոլորտից դեպի ցածր որակավորում պահանջող, սակայն նյութապես ավելի
ձեռնտու աշխատանքի ոլորտները։ Արդարացի է, անշուշտ այն կարծիքը, թե
«նրան, ով կարող է և ուզում է իր եկամուտը մեծացնել, հասարակությունը
պարտավոր է հնարավորություն ընձեռել» («Вопросы философии», 1982,
№ 5, с. 9), սակայն նման հնարավորության իրականացումը ո՛չ միայն
չպետք է դուրս գա իրավական նորմերի շրջանակներից, այլև չպետք է նսե-
մացնի աշխատանքի կենսական իմաստը, հանդեցնելով այն զուտ նյութական
վարձատրմանը։ Իհարկե, խոսելով աշխատավարձի բնագավառում քաղաքա-
կանության մասին, չպետք է մոռանալ այն գլխավոր պայմանը, որ աշխատա-
վարձը կարող է նպաստել աշխատանքի նկատմամբ մեր իդեալներին համա-
պատասխան վերաբերմունքի ձևավորմանը։ Մինչդեռ, ցավոք սրտի, անաշ-
խատ եկամուտների առկայությունն է հենց նսեմացնում և՛ աշխատավարձի
դաստիարակչական դերը, և՛ առհասարակ աշխատանքի իմաստի կոմունիս-
տական իդեալը, դառնում վերջին հաշվով սոցիալիստական ապրելակերպից
բոլոր խոտորումների հիմնապատճառը։
«Մենք նյութական ու հոգևոր մեծ հնարավորություններ ունենք անհատի
ավելի ու ավելի լրիվ զարգացման համար,— շեշտվեց ՍՄԿԿ XXVI համագու-
մարում,— և այսուհետև էլ կմեծացնենք դրանք։ Բայց դրա հետ մեկտեղ կա-
րևոր է, որ յուրաքանչյուր մարդ կարողանա խելացիորեն օգտվել դրանցից։
Իսկ դա վերջին հաշվով պայմանավորված է այն բանով, թե ինչպիսին են ան-
հատի շահերը, պահանջմունքները։ Ահա թե ինչու մեր կուսակցությունը սո-
ցիալական քաղաքականության կարևոր խնդիրներից մեկը համարում է դրանց
ակտիվ, նպատակասլաց ձևավորումը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը,
էջ 103)։ Այս խնդրի ողջ բարդությունը գիտակցելու համար բավական է նկա-
տի ունենալ այն, որ պահանջմունքների նպատակասլաց ձևավորումը կապված
է, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, ամենաահռելի ուժի՝ սովորույթի ուժի հետ, և



այն թերագնահատելն առնվազն միամտություն է։ Օրինակ, «ով աշխատի, նա
կուտի» բարոյական սկզբունքը, որ անբաժան է եղել կոմունիզմի մասին երա-
զանքներից, անցյալի ուտոպիստական ծրագրերից, միս ու արյուն է ստացել
ռեալ սոցիալիզմի պայմաններում, սակայն անհրաժեշտ է գիտակցել, որ յու-
րաքանչյուր հաջորդ սերնդի համար այն պետք է հիմնավորվի սոցիալական
փաստերով։
Կուսակցության XXVI համագումարը շեշտեց. «Նյութական ու բա-
րոյական խթանների մեր սիստեմը պետք է միշտ և ամենուրեք ապահովի յու-
րաքանչյուրի աշխատանքային ներդրման արդարացի և օբյեկտիվ գնահատա-
կանը։ Պետք է ամեն կերպ խրախուսել բարեխիղճ աշխատողներին, միանգա-
մայն անպետք աշխատանքի դեպքում լավ ապրելու ոչ մի սողանցք չթողնել
ալոդրերի և խոտանարարների համար։ Ով ուզում է ավելի լավ ապրել, նա պետք
է ավելի շատ ու ավելի լավ աշխատի» (նույն տեղը, էջ 96)։
Աշխատանքի մարդու գնահատականը պետք է տրվի ոչ թե առհասարակ,
վերացականորեն, այլ կոնկրետ հարցերում, աշխատանքային կոլեկտիվի առ-
օրյա կյանքում, ամենօրյա մարդկային փոխհարաբերություններում։ Աշխա-
տանքի հասարակական բարձր հեղինակությունը պետք է ոչ թե սոսկ հռչակվի
շքեղ ձևավորված լոզունգներով, այլ լինի կոլեկտիվների ղեկավարության
ամենօրյա հոգատարության գլխավոր առարկան, ապահովվի աշխատանքի
կազմակերպման և կառավարման ողջ համակարգով։
Գիտատեխնիկական հեղափոխության ընթացքը, արտադրության համա-
կարգում մարդու նոր դերի ձևավորման միտումը, աշխատանքի սուբյեկտին
ներկայացվող նոր պահանջները վկայում են, որ աշխատանքի կազմակերպ-
ման և կառավարման կենտրոնը դառնում է հատկապես «մարդկային գործո-
նը»։ Միևնույն ժամանակ ընդլայնվում են զարգացած սոցիալիզմի հնարավո-
րությունները տնտեսական և սոցիալական ներդաշնակ առաջընթացի, սոցիա-
լական ծրագրի առաջնության ապահովման համար։ Ահա նման պայմաններում
մարդու և տեխնիկայի փոխհարաբերության, սոցիալական և տեխնիկատնտե-
սական զարգացման նպատակների մասին սկզբունքորեն հնացած պատկերա-
ցումները վերածվում են աշխարհայացքային թերությունների, որոնք գործ-
նականում հանգեցնում են «մարդկային գործոնի» դերի և նշանակության թե-
րագնահատմանը։ Առանց տեխնոկրատական մոլորություններից ազատվելու
հնարավոր չէ լիովին գիտակցել այն փաստը, որ ներկա պայմաններում հենց
«մարդկային գործոնն» է աստիճանաբար դառնում տնտեսական և սոցիալա-
կան խնդիրների լուծման կիզակետը։ Արդ անհրաժեշտ է, որ սոցիալական
գործոնների կարևորության ըմբռնումը, տնտեսական և սոցիալական զարգաց-
ման փոխկապակցվածության գիտակցումը տիրապետող դառնան հասարակա-
կան կյանքի կազմակերպման և կառավարման բոլոր մակարդակներում։
Այս խնդրի հետ սերտորեն առնչվում է այնպիսի մի պրոբլեմ, ինչպիսին
է ինժեներական կրթության հումանիտարացումը։ Բանն այն է, որ աշխատան-
քային կոլեկտիվների շատ ղեկավարներ, արտադրության կազմակերպիչներ
չունեն պատշաճ սոցիալ-հոգեբանական գիտելիքներ։ Ահա թե ինչու մեր երկրի
և հանրապետության որոշ բուհերում սկսել են ապագա ինժեներներին, տըն-
տեսագետներին, տեխնոլոգներին հաղորդակից դարձնել նաև սոցիալական հո-
գեբանությանը, սոցիոլոգիային, կառավարման այբբուբենին։ Կարելի է հիշա-
տակել, օրինակ, Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի հասարակագիտա-
կան մասնագիտությունների ֆակուլտետի կուտակած փորձը։
Աշխատանքի հումանիզացման մյուս կարևոր խնդիրը անմիջական դե-
մոկրատիայի ընդլայնումն է արտադրությունում, այն անհրաժեշտ պայման-
ների ստեղծումը, որոնց միջոցով յուրաքանչյուր աշխատող կարողանա անմի-
ջապես, առօրյայում մասնակից դառնալ ո՛չ միայն իր սեփական, այլև ողջ
կոլեկտիվի, ձեռնարկության արտադրական գործունեության կառավարման
հարցերին։ Դեմոկրատիայի անշեղ կատարելագործումը, իբրև ՍՄԿԿ սոցիա-
լական ծրագրի կարևոր խնդիրներից մեկը, թելադրվում է ո՛չ միայն ժամա-
նակակից արտադրության օբյեկտիվ պահանջներով, այլև աշխատանքային
կոլեկտիվի հետագա սոցիալական զարգացման, կոմունիստական աշխատան-

քի ձևավորման օրինաչափություններով: Արտադրության կառավարմանն անմիջական մասնակցության ապահովումը առանցքային խնդիր է այնպիսի կարևոր սոցիալական պրոբլեմների լուծման համար, ինչպիսին են աշխատողների մոտ սոցիալական արդարության զգացումի ձևավորումը, յուրաքանչյուրի մասին հասարակական ճիշտ կարծիքի ստեղծումը, կայուն աշխատանքային կոլեկտիվի ձևավորումը, աշխատանքից օտարման սոցիալ-հոգեբանական պատճառների կանխումը և այլն:

Դժվար չէ ենթադրել այն ուղիղ համեմատական կապը, որ գոյություն ունի կոնկրետ աշխատողի «կառավարչական ակտիվության» և ձեռնարկության տիրոջ զգացումի ձևավորման, բարձր պատասխանատվության, աշխատանքային և հասարակական ակտիվության դրսևորման, առհասարակ աշխատանքային գործունեության կենսական իմաստի ըմբռնման միջև: Նման կապի գոյությունը հաստատված է մի շարք կոնկրետ սոցիոլոգիական հետազոտություններով: Վերջիններս վկայում են և հակառակ կապի գոյությունը, այն է՝ արտադրության կառավարմանը անձնական մասնակցության հնարավորությունների բացակայությունը, որը, ինչ խոսք, պետք է բացասաբար անդրադառնա աշխատողի դիրքորոշման, ակտիվության, ինքնազգացողության վրա: Իսկապես, այն բանի գիտակցումը, որ մարդը միանգամայն անզոր է որևէ բան փոխել իր աշխատանքային շրջապատում, որ իր առաջարկություններն ու ցանկությունները չեն իրագործվելու, կարող է հանգեցնել նրա խորթացմանն իր կոլեկտիվից, ձեռնարկությունից, նույնիսկ աշխատանքից: Հող է ստեղծվում աշխատանքից ինքնաօտարման համար, երբ աշխատողը ո՛չ միայն իրեն չի զգում իր ձեռնարկության տերը, այլև սեփական աշխատանքը և աշխատանքային փոխհարաբերություններն ընկալում է իբրև իրեն խորթ և պարտադրված: Այս երևույթը օբյեկտիվորեն չի բխում և չի կարող բխել սոցիալիստական հասարակարգի էությունից, սակայն դրա հնարավորությունն անհրաժեշտ է հաշվի առնել աշխատանքի հումանիզացման պրոբլեմի տեսական քննարկման և գործնական լուծման ժամանակ: Արտադրական դեմոկրատիայի ապահովումը հնարավոր է դարձնում աշխատավորների մոտ խոր համոզմունք ձևավորելու յուրաքանչյուր մարդու հասարակական գնահատման սոցիալիստական չափանիշների կիրառման նկատմամբ, հասարակական կարծիքով ամրապնդել կադրային քաղաքականությունը, ստեղծել ճիշտ կարծիք և հավանություն տալ այս կամ այն աշխատողի առաջքաշմանը, դրանով իսկ նպաստել կոլեկտիվի համախմբվածությանը, նրա առջև դրված սոցիալական և տնտեսական խնդիրների լուծմանը: Մարդկանց կարծիքները յուրատեսակ օբյեկտիվ ռեալություն են յուրաքանչյուր առանձին անհատի համար և ոչ մի դեպքում չի կարելի անտեսել դրանց դերը ողջ կոլեկտիվի և յուրաքանչյուրի աշխատանքային վարքում: Աշխատավորների շրջանում ձեռնարկության գործերի մասին ճիշտ պատկերացում ձևավորելու, ձեռնարկության ընդհանուր նպատակների հետ առանձին աշխատողի շահերի ու նպատակների նույնացման համար և թե բուն կազմակերպչական թերությունների հայտնաբերման ու շտկման լավագույն ուղին անմիջական արտադրական դեմոկրատիայի հետագա ընդլայնումն է:

Սոցիալիստական հասարակության համար աշխատանքի հումանիզացումը այն կենտրոնական պրոբլեմն է, որն ապահովում է մնացած բոլոր պրոբլեմների լուծումը, իմաստավորում է դրանք՝ տեխնիկական առաջընթացը, տնտեսական զարգացումը, արտադրական պլանների առաջադրումն ու կատարումը և այլն: Աշխատանքի հումանիզացումն իր ողջ ծավալով այն որակական թռիչքն է, որի շնորհիվ զարգացած սոցիալիզմը վերաճելու է կոմունիստական հասարակության: Հետևաբար, կարելի է ասել, որ աշխատանքի հումանիզացումը, իբրև առաջնագույն սոցիալական պրոբլեմ, իմաստավորում է սոցիալիստական հասարակության անցած ուղին, վկայում է նրա հասունությունն՝ ընդհուպ ձեռնամուխ լինելու կոմունիզմին անցնելու պրոբլեմների լուծմանը:

---

# ԱՆՀԱՏԻ ԱԿՏԻՎ ԿԵՆՍԱԴԻՐՔՈՐՈՇՄԱՆ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

Հ. Ց. ՄՈՔՈՅԱՆ

ԱՆՀԱՏԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ, ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ակտիվության, նրա՝ որպես կոմունիզմ կառուցողի, բարոյական կերպարի ձևավորման հարցերը միշտ էլ եղել են կոմունիստական կուսակցության և սովետական պետության ամենօրյա ուշադրության կենտրոնում: Կոմունիստական բարոյականության հաստատումը Վ. Ի. Լենինն առնչում էր կոմունիստական իդեալները կյանքում կիրառելու խնդրի հետ, որն այսօր էլ հրատապ է, կենսական: Բարոյական արժեքները կազմում են մի ամբողջական համակարգ, որը կարգավորում է անհատի և հասարակության փոխհարաբերությունը: Սոցիալիստական հասարակության մեջ բարոյական սկզբունքներն օրըստօրե ավելի կարևոր նշանակություն են ձեռք բերում:

Մեր երկրում սոցիալիստական հասարակական հարաբերությունների զարգացման հետ միասին տեղ են գտնում նաև ապրելակերպի նոր ձևեր, որտեղ որպես հիմնական արժեք հանդես է գալիս աշխատանքի մարդը: Մարդու պրոբլեմը ինչպես գործնականորեն, այնպես էլ տեսականորեն առաջանում և իր լուծումն է գտնում սոցիալական կյանքի այնպիսի ձևերի ծագման և կատարելագործման մեջ, որոնք իրենց հերթին առավելագույն չափով հնարավորություններ են ընձեռում այսօրվա պատմական փուլին համապատասխան պայմաններ ստեղծելու անհատի ազատ ու ստեղծագործական զարգացման, նրա սոցիալական ակտիվության, իր գործունեության համար պատասխանատվության բարձրացման, հետևաբար՝ ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման համար: Սոցիալիզմի պայմաններում բարոյական ելակետային չափանիշ է ազատ և իրավահավասար անհատի դիրքորոշումը, որը մեծապես նպաստում է նյութական արտադրության պլանային պրոցեսի կատարելագործմանը, ինչպես նաև հասարակական հարաբերությունների զարգացմանը:

Անհատի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման հարցերի վերաբերյալ նկատառումներն ամենից առաջ պայմանավորված են կոմունիստական հասարակության կառուցման խնդիրների մասշտաբայնությամբ, որոնց իրականացման պրոցեսում ծագում են սովետական մարդու կյանքի լինելության, նրա գաղափարաբարոյական կերպարի ձևավորման վրա ազդող շատ գործոններ:

Սոցիալիստական հասարակարգում մարդկանց ակտիվ կենսադիրքորոշման հետ առնչվող բազմաթիվ հանգամանքներ պայմանավորված են գաղափարական համոզվածության, ընդհանուր գործին նվիրվածության չափանիշներով: Մարդու բարոյական համոզմունքը նրա ներքին հարստությունն է, գիտակցված և հասարակության կողմից ընդունված բարոյական այն արժեքները, որոնք ներթափանցել են նրա ողջ էության մեջ:

Անհատի ակտիվ կենսադիրքորոշման կարևորագույն հատկանիշները դրսևորվում են նրա նպատակամետ գործունեությամբ, այն է՝ հաստատել և զարգացնել մեր կյանքում գոյություն ունեցող դրականն ու առաջավորը, միաժամանակ սկզբունքային, անհաշտ պայքար մղել այն ամենի դեմ, ինչը խանգարում է հասարակության առաջընթացին: Անհատի դաստիարակումը, միլիոնավոր մարդկանց մոտ կոմունիստական բարոյական նորմերի ամրապնդումը նոր հասարակության կառուցման ծրագրային նպատակն է: Կուսակցությունը պա-

ցիալիստական հասարակության զարգացմանը խթանող կարևորագույն գործոններից է համարում մարդկանց ստեղծագործական ակտիվության բարձրացումը, նրանց ակտիվ դիրքորոշումն ու նախաձեռնելու կարողությունների հայտնաբերումը սոցիալ-տնտեսական զարգացման բոլոր բնագավառներում։

Բազմակողմանիորեն զարգացած անհատի դաստիարակության գործում կուսակցության ծրագրային դրույթների, կոմունիստական շինարարության խնդիրների իրականացման կարևորությունը բազմիցս շեշտվել է ՍՄԿԿ համագումարների և Կենտկոմի պլենումների որոշումներում, կուսակցության և կառավարության ղեկավարների ելույթներում։ Կուսակցության XXVI համագումարում նշվեց, որ մենք նյութական ու հոգևոր մեծ հնարավորություններ ունենք անհատի ավելի ու ավելի լրիվ զարգացման համար և այսուհետև էլ կմեծացնենք դրանք։ Բայց դրա հետ մեկտեղ կարևոր է, որ յուրաքանչյուր մարդ կարողանա խելացիորեն օգտվել դրանցից։ Իսկ դա, վերջին հաշվով, պայմանավորված է նրանով, թե ինչպիսին են անհատի շահերը, պահանջմունքները։ Ուստի և մեր կուսակցությունը սոցիալական քաղաքականության կարևոր խնդիրներից մեկը համարում է դրանց ակտիվ, նպատակամետ ձևավորումը։

Անհատի ակտիվ կենսադիրքորոշումը խտացված ձևով արտացոլում է մարդու հոգեկան աշխարհը, նրա աշխարհայացքը, քաղաքական և դասակարգային էությունը, նրա ապրելակերպն ու սոցիալական վիճակը. մի խոսքով, նրա՝ որպես անհատի բնավորության ու էության սոցիալ-հոգեբանական առանձնահատկությունները։ Ակտիվ կենսադիրքորոշման կարևոր կողմերից է և այն, որ նրանում դրսևորվում է մարդու գործնական ստեղծարար վերաբերմունքը բնության և հասարակական կյանքի նկատմամբ։ Չէ՞ որ մարդը ոչ միայն որոշակի գիտելիքների ու գաղափարների, որոշակի հոգևոր արժեքների ընտրողն ու յուրացնողն է, այլև դրանց հաստատողն ու կիրառողը պրակտիկայում։

Մարմնավորվելով մարդու գործունեության արդյունքների, նրա արարքների մեջ, կենսադիրքորոշումը առավել լրիվ է դրսևորում իր սոցիալ-քաղաքական բովանդակությունը։ Այստեղ պետք է հաշվի առնել, որ մարդը բնութագրվում է ոչ միայն նրանով, թե նա ինչ է անում, այլև նրանով, թե ինչպես է անում։ Ուստի անհատի կենսադիրքորոշումը գնահատելիս կարևոր է նկատի ունենալ նաև այն, թե ինչպիսի միջոցներով ու եղանակներով է նա հասնում իր նպատակների իրականացմանը։

Մեզանում դեռևս պատահում են մարդիկ, որոնք գիտենալով հանդերձ մեր քաղաքականությունն ու մեր սկզբունքները, միշտ չէ, որ գործնականում հետևում են դրանց, չեն պայքարում դրանց կենսագործման համար, հաշտվողական վերաբերմունք են ցուցաբերում սոցիալիստական համակեցության նորմերի խախտումների նկատմամբ։ Խոսքի ու գործի միջև խզումը, ինչ ձևերով էլ որ արտահայտվելիս լինի, վնասում է նաև տնտեսական շինարարությանը, բայց հատկապես՝ բարոյական դաստիարակությանը։

Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը նշեց. «Կուսակցական կազմակերպությունները պետք է հետևողականորեն հասնեն այն բանին, որպեսզի դաստիարակության գործը դառնա օրգանական, կոմպլեքսային, ամբողջական պրոցես, մշտապես հոգ տանեն յուրաքանչյուր աշխատավորի համակելու կոմունիստական գաղափարայնությամբ՝ որպես գիտելիքների, համոզմունքի և պրակտիկ գործողության. ակտիվ կենսադիրքորոշման համաձուլվածք» (ՀԿԿ XXVII համագումարի նյութերը, «Հայաստան» հրատ., 1981, էջ 86)։

Իր գործնական արտահայտությամբ կենսադիրքորոշումը խթանում է մարդու պոտենցիալ հնարավորությունների դրսևորմանը, նպաստում բացահայտելու նրա ընդունակություններն ու տաղանդը, կարողություններն ու հմտությունները նպատակամղում կյանքի դժվարությունների հաղթահարմանը։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ լայն հնարավորություններ են ստեղծված յուրաքանչյուր անհատի բազմակողմանի զարգացման և բա-



րոյական կատարելագործման համար, չափազանց կարևորվում է սովետական մարդկանց կոմունիստական գաղափարայնության, բարոյական բարձր հատկանիշների, սոցիալիստական համակեցության կանոնների խստիվ պահպանման, բացասական երևույթների դեմ անհաշտելիության, բուրժուական գաղափարախոսության ու բարոյականության, մեր հասարակությանը խորթ հակահասարակական բարքերի դրսևորման դեմ պայքարի ոգով դաստիարակումը։

Սովետական մարդու ակտիվ կենսադիրքորոշման առանցքը կոմունիստական գաղափարայնությունն է։ Հասուն սոցիալիզմի առաջընթացի պայմաններում անհատին հատուկ են բարձր գիտակցականությունը, պետության շահերի հանդեպ հոգատարությունն ու սրտացավությունը, հասարակական և պետական բոլոր գործերի հաջող լուծմանը մասնակցելու նրա ակտիվությունը։ Սովետական մարդիկ լավ են հասկանում կուսակցության և կառավարության վարած ներքին և արտաքին քաղաքականությունը, կարողանում են ճիշտ կողմնորոշվել հասարակական կյանքի հորձանուտում։ Նրանք քաջ գիտակցում են, որ կոմունիստական հասարակարգը չի կարելի կառուցել անտարբերների ձեռքով։ Այդ մեծ նպատակի համար հարկավոր են ակտիվ և գիտակից կառուցողներ, իսկական էնտուզիաստներ և մարտիկներ։

Կուսակցության հեղափոխական տեսության, քաղաքականության իմացությունը սովետական բոլոր մարդկանց մեջ պետք է վերածվի կոմունիզմի համար խորթ գաղափարախոսության ամեն տեսակ դրսևորումների դեմ պայքարող կայուն մարտիկի համոզմունքի, նրա ակտիվ կենսադիրքորոշման, դառնա գործողության ուղեցույց սոցիալիզմի կառուցման հրատապ պրոբլեմների լուծման համար։

Անհատի ակտիվ կենսադիրքորոշման մեջ առավել հստակորեն է արտահայտվում նրա հոգեկան աշխարհի ամբողջականությունը, որն ամենից առաջ դրսևորվում է խոսքի և գործի միասնությամբ։ Այդ միասնությունը, ստանձնած պարտավորությունները, մշակված ծրագրերը և դրանց իրականացումը շատերի համար արդեն դարձել են կյանքում հաստատված սոցիալ-բարոյական նորմեր։

Պրակտիկան ցույց է տալիս, որ խոսքի ու գործի միասնությունը մեր հասարակության ոչ բոլոր անդամներն են կարողանում պահպանել։ Երբեմն առանձին կոլեկտիվներում տեղ են գտնում անձնական նպատակների ու հասարակական շահերի բախումներ ու ընդհարումներ, որոնց պատճառով թուլանում է անհրաժեշտ պահանջկոտությունը։ Օրինակ՝ եթե տեխնիկական զինվածության ներկա պայմաններում ավտոմատ գծի կարգավորող բանվորը չգիտակցի, որ իր պարապուրդի գինը բազմակի անգամ մեծ է խառատի կամ ֆրեզերագործի պարապուրդի համեմատությամբ, ապա դա ժողովրդական տնտեսության մեջ կվերածվի հսկայական կորուստների։ Գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում անհամեմատ բարձր է աշխատանքային մեկ րոպեի արժեքը։ Մեր երկրում մեկ րոպեում արտադրվում է ավելի քան երկու միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ձուլվում է գրեթե 300 տոննա պողպատ, արդյունահանվում է ավելի քան հազար տոննա նավթ, գրեթե մեկուկես հազար տոննա ածուխ, 650 հազար խորանարդ մետր գազ։ Աշխատաժամանակի միայն մեկ րոպեի կորուստը երկրի մասշտաբով հավասարազոր է երկու հարյուր հազար բանվորի ցերեկային աշխատանքի արդյունքի կորստյան։

Անհատի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման մակարդակի մասին կարելի է դատել առաջին հերթին ըստ նրա գործերի ու արարքների, ինչպես նաև ըստ այն բանի, թե նա որքանով է իր օրինակով ներգործում ուրիշների վրա, օգնում, որպեսզի նրանք վերափոխվեն դեպի լավը, իրենց զարգացման ընթացքում բարձրանան որակական նոր աստիճանի։ Կ. Մարքսը նշել է, թե ուրիշ մարդկանց վրա ազդեցություն գործելու համար նախ մարդ ինքը պետք է իր մեջ մշակի այնպիսի արժանիքներ, որոնք կխթանեին և առաջ կշարժեին մյուս մարդկանց (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Из ранних произведений. М., 1956, стр. 620)։

Ակտիվ կենսադիրքորոշման բովանդակության վերլուծությունն անհրաժեշտորեն պետք է քննարկել տարբեր ասպեկտներով։ Նախ, ակտիվ կենսադիր-

# ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ա. Խ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ և աշխատանքի որակի բարձրացումը աշխատավորական ամենալայն զանգվածների համար դարձել է ամենօրյա պրակտիկ գործունեության կարևորագույն խնդիր։ Եվ դա օրինաչափ է. բարձր արդյունավետությունն ու որակը ոչ միայն երկրի տնտեսական վերելքի, այլև ժողովրդի կենսամակարդակի աճի հիմքն են։ Միլիոնավոր մարդկանց հայրենանվեր գործունեությունը, նրանց ստեղծագործական որոնումները կոնկրետ կերպով դրսևորվում և արտացոլվում են սոցիալիստական մրցության մեջ, որը ոչ այլ ինչ է, եթե ոչ այդ նույն միլիոնների ստեղծագործություն։ «Իր բուն էությամբ այն հիմնված է մարդկանց բարձր գիտակցականության և նախաձեռնության վրա։ Հենց այդ նախաձեռնությունն է օգնում բացահայտելու և գործողության մեջ դնելու արտադրության ռեզերվները, բարձրացնելու աշխատանքի արդյունավետությունն ու որակը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 94)։

Այժմ, երբ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումի առաջադրած նոր խնդիրներին համապատասխան էապես բարձրացել է կոլեկտիվների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, ավելի է կարևորվում մրցության դերը ոչ միայն արտադրական ծրագրերի կատարման, այլև մարդկանց գիտակցական կարգապահության ոգով դաստիարակելու գործում։ Եվ եթե կոլեկտիվների ջանքերը գնահատում ենք կուսակցության XXVI համագումարի և Կենտկոմի նոյեմբերյան պլենումի պահանջների չափանիշներով, ապա որոշակի երևում է, որ քննարկվող խնդիրների առնչությամբ զգալի գործ է արված։ Երկրում ծավալված սոցիալիստական գործարար մրցությունը, հայրենասիրական շարժումները և արտադրական նվաճումները դրա կոնկրետ վկայությունն են։

ՍՄԿԿ XXVI համագումարի և Կենտկոմի նոյեմբերյան պլենումի պահանջներից լուրջ եզրակացություն են անում նաև մեր հանրապետության աշխատավորական կոլեկտիվները։ Կուսակցական կազմակերպությունների գլխավորությամբ նրանք ստանձնում են պետական պլաններն ու արտադրական նորմաները գերազանցող պարտավորություններ և հետևողականորեն պայքարում դրանց կատարման համար։

Հանրապետության ընդհանուր հաջողություններում ծանրակշիռ ավանդ են մուծում արդյունաբերության բնագավառի աշխատողները։ Այդ ճյուղի կոլեկտիվները, սկզբնական կուսկազմակերպությունների գլխավորությամբ, սոցիալիստական գործարար մրցություն են ծավալում պետական առաջադրանքներն ու ստանձնած պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու համար։ Դրա շնորհիվ տասնմեկերորդ հնգամյակի անցած երկու տարում ևս նրանք հասան նկատելի հաջողությունների։ Այսպես, արտադրանքի իրացման 1981 թ. պլանը կատարվեց ժամկետից հինգ օր շուտ, դեկտեմբերի 25-ին, և երկրին պլանից դուրս տրվեց 187 հազար ռուբլու գերպլանային արտադրանք, էապես բարելավվեցին որակական ցուցանիշները։

* Հոդվածը պատրաստելիս հեղինակն աշխատում էր ՀԿԿ Կենտկոմում՝ որպես արդյունաբերության բաժնի վարիչի տեղակալ։ Այժմ նա ՀԿԿ Երևանի 26 կոմիսարների շրջկոմի առաջին քարտուղարն է։



Տասնմեկերորդ հնգամյակի երկրորդ տարին հոբելյանական էր։ Ամենուրեք մրցություն էր ծավալվել ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակն արժանավայել նշանավորելու համար։ Հանրապետության արդյունաբերության աշխատողները պատվով կատարեցին նաև այդ առթիվ իրենց ստանձնած պարտավորությունները։ Արտադրանքի թողարկման պլանը նրանք կատարեցին դեկտեմբերի 24-ին, 1980 թ. համեմատությամբ, արդյունաբերական արտադրության ծավալը մեծացավ 11,5 տոկոսով։

Անտարակույս, արտադրական հաջողությունը մարդկանց լավ աշխատանքի, սոցմրցության արդյունավետ կազմակերպման և լայն ծավալման արգասիք է։ Որքան մրցությունը գործարար բնույթ է կրում, որքան մեծ են նրա ընդգրկման մասշտաբները, այնքան հաջողություններն ավելի ակնբախ և տեվական են։ Այդ իրողության կոնկրետ օրինակներ կարող են տալ «Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրամեքենա», «Հայէլեկտրասարք» միավորումները, Երևանի էլեկտրատեխնիկական, էլեկտրասարքավորումների, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, ալյումինի, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանները, Չարենցավանի կենտրոնական ձուլարանը և հանրապետության առաջավոր շատ այլ ձեռնարկություններ։

Սոցիալիստական մրցության արդյունավետ կազմակերպման հարուստ փորձ է կուտակել «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկոմիտեն։ Մրցության ծավալումը և ստանձնած պարտավորությունների կատարումը գտնվում են նրա մշտական հսկողության ներքո։ Կոմիտեի նիստերում պարբերաբար քննարկվում են սոցմրցության կազմակերպմանը, ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքին և արդյունքներին, մրցության ձևերի ու մեթոդների կատարելագործմանը վերաբերող հրատապ հարցեր, միջոցներ են ձեռնարկվում այդ գործում բացահայտված թերությունները վերացնելու համար։ Կուսկոմիտեի ակտիվ մասնակցությամբ մշակվել են սոցիալիստական մրցության պայմանները, որոնց հիման վրա կազմակերպվում է կոլեկտիվ ու անհատական մրցությունը, որոշվում մրցանակային տեղեր տալու կարգը։ Հաղթող կոլեկտիվների համար սահմանվում են խրախուսանքի միջոցներ։ Այստեղ կիրառվում են կոլեկտիվ մրցության մի քանի ձևեր։ Կոլեկտիվ մրցության մեջ ընդգրկվում են հիմնական ու օժանդակ արտադրամասերը, տեղամասերն ու բրիգադները։ Ընդ որում միջարտադրամասային մրցությունը կազմակերպվում է ըստ հիմնական և օժանդակ արտադրամասերի։ Դա մրցող կոլեկտիվների համար ստեղծում է պայքարի և մրցանակային տեղեր գրավելու հավասար հնարավորություններ, բարձրացնում մրցողների շահագրգռությունը արտադրական վերջնարդյունքների համար։

Կոլեկտիվն արդեն մեկ տասնամյակից ավելի մրցում է ճյուղի առաջատար ձեռնարկությունների՝ Մինսկի էլեկտրատեխնիկական, Ռիգայի էլեկտրամեքենաշինական, Թբիլիսիի էլեկտրաքարշաշինական, Կիևի Պատոնի անվան էլեկտրաեռակցման գիտահետազոտական ինստիտուտի փորձնական գործարանների կոլեկտիվների հետ։ Բարեկամական այդ մրցությունը, փորձի փոխանակումը օգնում են մրցակիցներին՝ լուծելու գիտատեխնիկական առաջընթացի արագացմանն առնչվող զանազան խնդիրներ։ Միավորման կուսկոմիտեն զգալի գործ է արել գիտատեխնիկական առաջընթացի արագացումն ապահովելու համար։ Կուսկոմիտեի նիստերում գործարար կերպով քննարկվել են այդ պրոբլեմին և արտադրությանը վերաբերող այլ հարցեր, մշակվել ու կենսագործվում է միջոցառումների ծավալուն պլան։

Սոցիալիստական մրցության հաջողությունը նրա մասսայականության մեջ է։ Այդ խնդիրը մշտապես կուսկոմիտեի և արտադրամասային կուսկազմակերպությունների բյուրոների տեսադաշտում է։ Նրանք ջանում են մրցության մեջ ներգրավել ոչ միայն բանվորներին, այլև ծառայողներին ու ինժե-

ներատեխնիկական աշխատողներին։ Այսօր միավորման ավելի քան 11 հա-
զար 600 աշխատողներ սոցմրցության մասնակիցներ են։ Նրանց մեկ երրորդն
անմիջականորեն արտադրանք տվող բանվորներ են։ Մրցության պրոցեսում
հաջողությամբ է իրականացվում բանվորների և ինժեներատեխնիկական անձ-
նակազմի ստեղծագործական համագործակցությունը։ Մրցություն է կազմա-
կերպվում «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական երաշխիք» նշա-
նաբանով։

Արդյունաբերական ձեռնարկություններում մրցությունը խարսխվում է
կոլեկտիվ և անհատական պարտավորությունների վրա։ Քանաքեռի ալյումինի
գործարանում արտադրամասերի, տեղամասերի, հերթափոխությունների և
բրիգադների պարտավորություններում տեղ են գտնում բոլոր այն ցուցանիշ-
ները, որոնք բնորոշ են տվյալ տարում կոլեկտիվի առջև ծառացած խնդիրնե-
րին, բոլոր առանցքային հարցերը, որոնք անհապաղ լուծման կարիք ունեն։
Այդ պարտավորությունները հիմնավորվում են ինժեներական հաշվարկներով,
որոնք նպաստում են նախանշած խնդիրների հաջող լուծմանը։ Այդ իրողու-
թյունն առավել ցայտուն կերպով դրսևորվեց ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակի
պատվին ծավալված սոցմրցության ընթացքում։ Բոլոր արտադրամասերը, տե-
ղամասերը և բրիգադները պատվով դուրս եկան այդ մրցությունից, կատարե-
ցին ստանձնած պարտավորությունները։

Սոցիալիստական մրցությունը մարդկանց կոմունիստական դաստիարա-
կության կարևոր միջոց է։ Նրանց բարձր գիտակցականությունը մասնավորա-
պես դրսևորվում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի
և հայրենասիրական նախաձեռնությունների մեջ։ Շատ ձեռնարկություններում
լայն տարածում է գտել «Աշխատանքին՝ կոմունիստական վերաբերմունք»
նշանաբանը։ Իսկ նման վերաբերմունքը սոցմրցության բարձրագույն ձևի ար-
մատավորման արտահայտությունն է։ Ներկայումս ալյումինի գործարանի
2.340 բանվոր և ինժեներատեխնիկական աշխատողներ մասնակցում են կո-
մունիստական աշխատանքի շարժմանը։ Նրանցից 1.800-ին շնորհվել է կո-
մունիստական աշխատանքի հարվածայինի պատվավոր կոչումը։ Կոմունիս-
տական աշխատանքի կոլեկտիվի կոչմանն արժանանալու համար պայքարում
են 39 բրիգադ, 15 հերթափոխ, 13 արտադրամաս։ Այդ կոչումը հպարտությամբ
կրում են 9 բրիգադ, 11 տեղամաս և արտադրամաս։ «Հայէլեկտրամեքենա»
արտադրամիավորման կոլեկտիվի ավելի քան 4.650 անդամների ևս շնորհվել
է կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչում։ Աշխատանքի նկատ-
մամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը մասնակցում է «Էլեկտրա-
սարք» արտադրամիավորման բանվոր-ծառայողների 90 տոկոսից ավելին։
Այստեղ կոմունիստականի բարձր կոչումը կրում են մի քանի հարյուր բանվոր-
ծառայողներ։

Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը
մասնակցող կոլեկտիվներին բնորոշ է բարոյահոգեբանական առողջ մթնոլոր-
տը։ Նրանք աշխատում են «Մեկը՝ բոլորի, բոլորը՝ մեկի համար» նշանաբա-
նով։ Ամեն մեկը սրտացավություն է հանդես բերում ձեռնարկության մակնիշի
պատվի համար։ Պատահական չէ, որ հայրենասիրական նախաձեռնություն-
ները ծնունդ են առնում հատկապես այն կոլեկտիվներում, որոնք պայքարում
են կոմունիստականի կոչման համար։ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիա-
վորումում լայն տարածում են ստացել «Հնգամյակը՝ չորս տարում», «Արտա-
դրության ծավալի ողջ աճը՝ ի հաշիվ արտադրողականության բարձրացման»,
«Արդյունավետ աշխատանք յուրաքանչյուր բանվորական տեղում» նախաձեռ-
նությունները։ Դրանք խթանում են արտադրության առաջընթացը, մարդկանց
համակում լավ աշխատելու պատրաստակամությամբ։ Զարենցավանի կենտ-
րոնական ձուլարանում, գործիքաշինական, Երևանի էլեկտրատեխնիկական,
էլեկտրասարքերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, Կիրովականի
ավտոգենային մեքենաշինության, ճշգրիտ հաստոցների գործարաններում և
ուրիշ շատ ձեռնարկություններում լայն արձագանք գտավ «ՍՍՀՄ կազմավոր-
ման 60-ամյակին՝ 60 հարվածային շաբաթ» շարժումը։ Էլեկտրատեխնիկական
գործարանի կուսբյուրոն արդյունավետ կերպով գլխավորեց այդ նշանաբանով



ծավալված սոցմրցությունը։ Այստեղ աշխատանքային շաբաթներ նվիրվեցին
բոլոր միութենական հանրապետություններին։ Դրանք էապես նպաստեցին
բանվորների և ինժեներատեխնիկական անձնակազմի աշխատանքային ու քա-
ղաքական ակտիվության բարձրացմանը, պլանային առաջադրանքների ու սոց-
պարտավորությունների կատարմանը։ Ձեռնարկությունն անցած տարի արտա-
դրողականության բարձրացման հաշվին արտադրության ծավալի զգալի աճ
ապահովեց։

Արտադրության արդյունավետության բարձրացմանն ուղղված հայրենա-
սիրական նախաձեռնությունները պաշտպանելու, դրանց հեղինակներին ամեն
կերպ խրախուսելու, ուսանելին ու լավն արմատավորելու համար բարենպաստ
պայմաններ ստեղծելու առումով դրվատելի աշխատանք է կատարում Երևանի
Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի կուսկազմակերպության
բյուրոն։ Դեռևս ՍՄԿԿ XXVI համագումարի նախօրյակին Լենինի շքանշանա-
կիր Գ. Գրիգորյանի ղեկավարած բրիգադը հանդես եկավ նոր հնգամյակի
մեկնարկային տարվա առաջին եռամսյակի պլանը համագումարի բացման
օրը կատարելու նախաձեռնությամբ։ ՀԿԿ Լենինյան շրջկոմի բյուրոն հավա-
նություն տվեց նախաձեռնությանը և հանձնարարեց շրջանի բոլոր կուսկազ-
մակերպություններին լայնորեն տարածել այն։ Ինչպես Գ. Գրիգորյանի բրի-
գադը, այնպես էլ ուրիշ, նրա օրինակին հետևած շատ կոլեկտիվներ պատվով
կատարեցին իրենց խոստումը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրանքի որա-
կի բարելավմանը, հումքի և նյութերի խնայողությանը նվիրված հայրենասի-
րական լավ նախաձեռնություններով հանդես են եկել նաև գործարանի առա-
ջավոր բանվորներ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիրներ, Հայ-
կական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Աշոտ Ղազարյանը, Երևանի քա-
ղաքային սովետի դեպուտատ Ռազմիկ Արզումանյանը, ՍՍՀՄ արհմիություն-
ների XVII համագումարի պատգամավոր, ՀԱՄԽ-ի նախագահության անդամ,
«Պատվո նշան» շքանշանի ասպետ Հովհաննես Օհանյանը և ուրիշներ։ Գործա-
րանի կուսբյուրոն 1982 թ. փետրվարին հավանություն տվեց ձեռնարկության
առաջավոր կոլեկտիվների՝ «Արտադրանքի ծավալի աճի տեմպի հնգամյա
առաջադրանքը կատարել 4,5 տարում» նախաձեռնությանը։ Այդ շարժումը
նույնպես լայն տարածում գտավ շրջանի արդյունաբերական ձեռնարկություն-
ներում։

Ներկայումս է՛լ ավելի է աճում աշխատանքի արտադրողականության,
որպես արդյունաբերական արտադրանքի ավելացման և ժողովրդի նյութական
բարեկեցության մակարդակի բարձրացման արդյունավետ գործոնի դերը։
ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումում Կենտկոմի գլխավոր
քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը նշեց, որ էկոնոմիկայի արդյունավետու-
թյան գլխավոր ցուցանիշը՝ աշխատանքի արտադրողականությունը, աճում է
այնպիսի տեմպերով, որոնք մեզ չեն կարող բավարարել։

Նման վիճակը չի կարող լրջորեն չանհանգստացնել արդյունաբերական
ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններին։ Նրանք սոց-
մրցության մասնակիցների ջանքերն այժմ նպատակամղում են այդ կարևոր
ցուցանիշի՝ աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, առաջա-
դրանքների ու ստանձնած պարտավորությունների կատարմանը։ Հանրապե-
տության արդյունաբերական ձեռնարկություններն ամբողջությամբ վերցրած
հաջողությամբ կատարեցին ընթացիկ հնգամյակի անցած երկու տարիների հա-
մար սահմանված աշխատանքի արտադրողականության աճի տեմպի առա-
ջադրանքները։ Այն, օրինակ, 1981 թ., նախորդ տարվա համեմատությամբ,
աճեց 3,7 տոկոսով։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հանրապե-
տության մի շարք մեքենաշինական ձեռնարկություններում աշխատանքի ար-
տադրողականության աճի զգալի մասը ձեռք է բերվել արտադրության տեխ-
նիկական մակարդակի բարձրացման հաշվին։ Դրան բաժին է հասել ամբողջ
աճի 50 տոկոսը։ Աշխատանքի արտադրողականության ցուցանիշը շատ ձեռ-
նարկություններում դառնում է կոլեկտիվների սոցպարտավորությունների կա-
րևոր բաղկացուցիչ մասը և հաշվի է առնվում մրցանակային տեղերը որոշելիս

ու մրցության հաղթողներին խրախուսելիս: Այսպես, նույն Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի կոլեկտիվի 1982 թ. պարտավորություններում խնդիր էր դրված աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի և արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով իրականացնել տեխնիկական վերազինման և արտադրության տեխնիկական ու կազմակերպական մակարդակի աճի կոմպլեքսային միջոցառումներ, լայնորեն տարածել աշխատանքի առաջավոր փորձը: Մրցողները մասնավորապես խոստացել էին ներդնել առաջավոր, բարձր արտադրողական 205 սարքեր ու սարքավորումներ, հնացած 25 սարքավորումներ փոխարինել նորերով և վերակառուցել մեխանիկանախապատրաստվածքային № 1 արտադրամասը: Հաստոցաշինարարները միաժամանակ նախատեսել էին յուրացնել ալմաստային մշակման հաստոցներով սարքերի դետալների հղկման տեխնոլոգիական եղանակները, ներդնել մետաղակտրման, ճշգրիտ և գերճշգրիտ հաստոցներ: Այդ պարտավորությունները հաջողությամբ կատարվեցին:

Սակայն աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում դեռևս նկատվում են լուրջ թերություններ: «Աշխատանքի արտադրողականության բարձրացման արդյունաբերության մեջ եղած հնարավորությունները,— ասաց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, Կենտկոմի դեկտեմբերյան (1982 թ.) պլենումում,— բնավ էլ լրիվ չեն օգտագործվում»:

Աշխատանքի արտադրողականության աճի ռեզերվներից մեկը հանդիպական պլանն է: Սակայն դրա մշակմանն ու ընդունմանն անհրաժեշտ ուշադրություն չի հատկացվում: Այսպես, 1982 թ. արտադրանքի իրացման ծավալի ցուցանիշներով հանդիպական պլան էր ընդունել արդյունաբերական ձեռնարկությունների միայն փոքր մասը, իսկ առանձին ցուցանիշներով, չնչին բացառությամբ, առհասարակ այդպիսի պլաններ չէին ընդունվել: Մինչդեռ այդ ցուցանիշը, որպես ներքին ռեզերվների հայտնաբերման ու գործադրման միջոց, պետք է իր պատշաճ տեղը գրավի սոցմրցության մասնակիցների ստանձնած պարտավորություններում:

Անժխտելի է, որ մրցության դաստիարակչական դերը ամենից առաջ դրսևորվում է մարդկանց ակտիվ և արդյունավետ գործունեության մեջ: Պատահական չէ, որ ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարում միասնական կարգագրով աշխատող բրիգադները դիտվեցին որպես բանվորների կառավարչական հմտությունների զարգացման իսկական դպրոց, որտեղ ներգրավված բանվորները, արտադրական բարձր առաջադրանքների հետ միասին, կարելի է ասել, ստանձնում են նաև դրանք ամբողջ ծավալով, կոմպլեքսայնորեն, ժամանակին և բարձր որակով կատարելու պատասխանատվություն:

Հանրապետության արդյունաբերության բնագավառում վերջին տարիներին որոշակի քայլեր են կատարվել աշխատանքի կազմակերպման և վարձատրման բրիգադային եղանակի արմատավորման ասպարեզում. զգալիորեն ավելացել է այդ եղանակով աշխատող կոլեկտիվների և դրանցում ընդգրկված բանվորների թիվը, նկատելիորեն բարելավվել է բրիգադների կառուցվածքը: Արդյունաբերական ձեռնարկություններում ներկայումս միասնական կարգագրով գործող բրիգադներում ներգրավված է ամբողջ բանվորների 52 տոկոսից ավելին, 1980 թվականի 48,5 տոկոսի փոխարեն:

Հանրապետությունում առաջիններից մեկը աշխատանքի կազմակերպման և վարձատրման բրիգադային եղանակը ներդրել է «Հայէլեկտրասարքավորում» միավորման գլխավոր ձեռնարկությունը, Երևանի էլեկտրասարքավորումների գործարանը: Այստեղ, կարկասաներկման արտադրամասում որոշվել էր ստեղծել կոմպլեքսային բրիգադ և կիրառել ըստ վերջնարդյունքի վարձատրման և աշխատանքային մասնակցության գործակցի հաշվառմամբ աշխատավարձը բաշխելու եղանակը: Այդ եղանակի ներդրումը նպաստեց արտադրամասի տնտեսական ցուցանիշների բարելավմանը, և նրա կոլեկտիվը քանիցս հաղթող դարձավ ներգործարանային սոցմրցությունում: Այդ բրիգադների ստեղծման համար պահանջվեց նախապատրաստական մեծ աշխատանք, մասնավորապես մշակվեցին աշխատանքային մասնակցության գործակցի հաշվառմամբ վար-



ձատրման պայմանները և բրիգադային եղանակի ներդրման կազմակերպչական-տեխնիկական միջոցառումները:

Պրակտիկան ցույց է տալիս, որ բրիգադային եղանակով աշխատող կոլեկտիվները շոշափելի արդյունքի են հասնում հատկապես այնտեղ, որտեղ ամուր հիմքերի վրա է դրված տարբեր ծառայությունների, մասնավորապես պլանավորման ու մատակարարման գործունեությունը: Եվ, ընդհակառակն, երիտասարդ կոլեկտիվները կրում են ոչ քիչ դժվարություններ, երբ տնտեսական ղեկավարներն անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում նախապատրաստական միջոցառումների իրականացմանը:

Նորի, առաջավորի ներդրումը, անկասկած, բարդ, աշխատատար պրոցես է՝ հաճախ կապված սովորական դարձած արտադրական ռիթմի խախտման հետ: Սակայն այդ կարգի դժվարությունները հաջողությամբ հաղթահարվում են այնտեղ, որտեղ կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարությունը գործում են ներդաշնակորեն, որտեղ կարողանում են առաջավոր փորձը դնել պլանային հիմքի վրա:

Բրիգադային աշխատաեղանակի հետագա ներդրման հետ միասին կարևոր նշանակություն ունի իր իսկ բրիգադի կենսագործունեության հարցը: Առանձնապես պետք է շեշտել բրիգադների խորհուրդների հեղինակության բարձրացման անհրաժեշտությունը: Ներկայումս հանրապետության արդյունաբերության մեջ միասնական կարգագրով աշխատող բրիգադների 58,3 տոկոսում ստեղծված են խորհուրդներ: Դրանց խնդիրն է ամրապնդել ու խորացնել բրիգադային եղանակը, նյութական ու բարոյական խթանների ճիշտ օգտագործմամբ մարդկանց դաստիարակել ամուր կարգապահության, աշխատանքի նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով:

Սակայն ոչ բոլոր ձեռնարկություններում է անհրաժեշտ ուշադրություն նվիրվում բրիգադային եղանակի արմատավորմանը, իսկ առանձին ձեռնարկություններում էլ տարվում են այդ եղանակով աշխատող կոլեկտիվներում ավելի շատ բանվորների ներգրավմամբ, բայց դրանց գործունեության համար նորմալ պայմաններ չեն ստեղծում: Լայն տարածում չեն ստացել հատկապես բրիգադների առավել արդյունավետ՝ կոմպլեքսային, միջանցիկ և տնտհաշվարկային ձևերը: Գործող բրիգադների ընդհանուր թվից կոմպլեքսայինները կազմում են 36,3, իսկ տնտհաշվարկայինը՝ ընդամենը 3,2 տոկոս: Այս առումով դրությունը մխիթարական չէ, օրինակ, Երևանի «Հաստոցանորմալ», «Ալմաստ», ֆրեզերային հաստոցների, Արթիկի վակուումային էլեկտրավառարանների և այլ գործարաններում, որտեղ բրիգադային եղանակը ներդրվում է բացառապես հիմնական արտադրամասերում: Ընդ որում չեն վերանայվում արտադրական նորմաները և աշխատատարության նվազեցման առաջադրանքները, չեն կատարվում միջհերթափոխային պարապուրդների հաշվառում և բրիգադային եղանակի ներդրման արդյունավետության հաշվարկներ:

Տնտեսավարման նոր պայմաններում արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների գլխավոր խնդիրներից մեկը աշխատանքի կազմակերպման բրիգադային եղանակի փորձի տարածումն ու արմատավորումն է: Դրա առավելությունն անժխտելի է, որն ապացուցվել է շատ կոլեկտիվների արդյունավետ աշխատանքով և բարձր արդյունքներով: Իսկ եթե հաշվի առնենք, որ ՍՄԿԿ XXVI համագումարի պահանջներին համապատասխան աշխատանքի կազմակերպման և խրախուսման բրիգադային եղանակը ընթացիկ հնգամյակում դառնալու է արտադրական կոլեկտիվների գործունեության հիմնական ուղղությունը, ապա արդյունաբերության մեջ մրցության առաջատար ձևը լինելու է բրիգադային մրցությունը: Ահա թե ինչու կուսկազմակերպությունները պետք է ամենուրեք կարևոր ուշադրություն նվիրեն միջբրիգադային մրցությանը, ուժեղացնեն բրիգադների դերը հանրային արտադրության և աշխատանքի որակի բարձրացման, աշխատանքային ու արտադրական կարգապահության ամրապնդման համար մղվող պայքարում: Նրանք կոչված են ամեն կերպ պաշտպանելու և տարածելու աշխատանքի տեխնիկապես հիմնավորված նորմաների ներդրման, բրիգադային տնտհաշվարկի, խնայողության և որակի անձնական հաշիվների ընդունման, աշխատողների քիչ

թվով նախատեսված ծավալի գործերը կատարելու վերաբերյալ նախաձեռնությունները։

Աշխատավորական կոլեկտիվները, ճիշտ ըմբռնելով ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում պլանային, աշխատանքային և արտադրատեխնոլոգիական կարգապահությունն ամրապնդելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի պահանջները, հանդես են բերում դրանք հետևողականորեն կատարելու վճռականություն։ Այդ առումով ուշագրավ են Երևանի մի շարք արդյունաբերական ձեռնարկություններում ծավալված շարժումները։ Այսպես, «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման կոլեկտիվներում մրցություն են ծավալել «Օրինակելի կարգապահության կոմերիտական-երիտասարդական բրիգադ» կոչմանն արժանանալու համար։ Այն լայն արձագանք է գտել հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներում։ Հատկանշական է, օրինակ, որ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման բոլոր 71 կոմերիտական-երիտասարդական բրիգադները ներգրավվել են այդ շարժման մեջ և ամեն կերպ ձգտում են ամրապնդել աշխատանքային և արտադրական կարգապահությունը, կանխել անհարգելի բացակայությունները, ամեն օր, ամեն ամիս կատարել արտադրական նորմաները։

Այսպիսով, քիչ բան չի արված սոցիալիստական մրցության արդյունավետությունը բարձրացնելու, դրան գործարար բնույթ տալու համար։ Սակայն առջևում է՛լ առավել պատասխանատու խնդիրներ կան լուծելու։ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը 1983 թվականը համարեց տասնմեկերորդ հնգամյակի առանցքային տարի և նշեց, որ այդ տարվա պլանային առաջադրանքների կատարմամբ է պայմանավորված ողջ հնգամյակի հաջող ավարտը։ «Այժմ,— պլենումում ասաց ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— հատկապես կարևոր է ու հարկավոր է, որ յուրաքանչյուր աշխատավոր հասկանա, որ պլանի կատարումը պայմանավորված է իր աշխատանքային ներդրումով»։

Հանրապետության արդյունաբերության աշխատողները բարձր պարտավորություններ են ստանձնել նաև այս հնգամյակի երրորդ, առանցքային տարում։ Նրանք խոստացել են, հանրային արտադրության ինտենսիվ գործոնների դերը և դրա արդյունավետությունը բարձրացնելու, արտադրության կայուն և առաջընթաց զարգացումն ապահովելու շնորհիվ, ժամկետից շուտ կատարել արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալի և կարևորագույն արտադրատեսակների թողարկման տարեկան պլանը, ապահովել արտադրանքի մատակարարումը պայմանագրերին և սպառողների պատվերներին լրիվ համապատասխան։

Սոցիալիստական պարտավորություններում հատուկ տեղ է տրվում որակական ցուցանիշների բարելավմանը։ Արդյունաբերության աշխատողներն իրենց առջև խնդիր են դրել 1983 թվականին ավելացնել որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի թողարկումը, հիմնականում ավարտել որակի կառավարման հանրապետական համակարգի ներդրումը։ Ի կենսագործումն ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան 1982 թ. պլենումի որոշումների՝ նրանք խոստացել են խնայողության ռեժիմի խստիվ կիրառման, նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հաշվին, առաջավոր փորձի, անթափոն և խնայողական տեխնոլոգիաների լայն արմատավորման, հումքի և նյութերի տեսակարար ծախսումների կրճատման, թողարկվող արտադրանքի տեխնոլոգիաների և կոնստրուկցիաների կատարելագործման, երկրորդային ռեսուրսների օգտագործման ընդլայնման հիման վրա տնտեսել մեծ քանակությամբ հումք, նյութեր, էլեկտրաէներգիա և վառելանյութ։

Արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները, արտադրական կոլեկտիվները համակողմանի և եռանդուն աշխատանք են ծավալում սոցիալիստական մրցության արդյունավետության բարձրացմամբ ստանձնած պարտավորություններն անթերի կատարելու, հետևաբար, և ողջ հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացման հաստատուն նախադրյալներ ստեղծելու համար։

---

# ՃՇՄԱՐՏԱՑԻ, ՄԱՏՉԵԼԻ ԵՎ ՆԵՐԳՈՐԾՈՒՆ

**Մ. Գ. ՍԱՆԹՐՈՍՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ, Ստ. Շահումյանի անվան ֆաղլուստան վարիչ

Սովետական ժողովուրդը աններեր հաստատակամությամբ կյանքի է կոչում ՍՄԿԿ XXVI համագումարի մեծ կանխագծումները, իրագործում ժողովրդական տնտեսության զարգացման տասնմեկերորդ հնգամյակի խնդիրները։ Այդ ասպարեզում ակնառու հաջողությունների են հասել նաև մեր հանրապետության աշխատավորները։

Երկրի առաջընթացի ճանապարհին ծառացած մեծ ու բարդ խնդիրների լուծման համար աշխատավորների ուժերի մոբիլիզացման գործում նշանակալի ավանդ են ներդնում գաղափարախոսական աշխատողները։ Նրանք մասսաներին են հասցնում կուսակցության որոշումներն ու ծրագրերը, նպաստում աշխատավոր զանգվածների հասարակական ու արտադրական ակտիվության բարձրացմանը։ Գաղափարախոսական կադրերը, զինված մարքս-լենինյան ուսմունքով, օգտագործելով քաղաքական պրոպագանդայի ժամանակակից հզոր միջոցները, համակողմանի աշխատանք են կատարում սովետական մարդկանց գաղափարական համոզմունքների ձևավորման, կոմունիզմի գործի, սովետական հայրենիքի նկատմամբ նվիրվածության ոգով նրանց դաստիարակելու, կոմունիստական կուսակցության շուրջը է՛լ ավելի համախմբելու նպատակով։

Կյանքը մշտապես նոր խնդիրներ է առաջադրում գաղափարախոսական ճակատի աշխատողներին։ Կուսակցության XXVI համագումարը, հաշվի առնելով զարգացած սոցիալիզմի հասարակական, քաղաքական պայմանները, ինչպես նաև միջազգային ասպարեզում սրվող գաղափարախոսական պայքարի պահանջները, խնդիր դրեց կատարելագործել գաղափարախոսական աշխատանքի ձևերն ու մեթոդները, վերակառուցել նրա շատ տեղամասեր ու ոլորտներ։

Կուսակցության այս պահանջի կատարումն առավել հրատապ է այժմ, երբ սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել մեր երկրի համար պատմական նշանակություն ունեցող խնդիրների իրականացմանը, պարենային ծրագրի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի որոշումների կատարմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը, «ՍՍՀՄ վաթսուն տարին» զեկուցման մեջ, անդրադառնալով գաղափարախոսական և մասսայական-քաղաքական աշխատանքին, նշեց, որ այդ բնագավառում մեր առջև մեծ խնդիրներ են ծառացած։ «Մեր նվաճումների համոզիչ, կոնկրետ ցուցադրում, կյանքի կողմից մշտապես ծնվող նոր պրոբլեմների լուրջ վերլուծություն, մտքի ու խոսքի թարմություն՝ ահա մեր ամբողջ պրոպագանդայի կատարելագործման ուղին, պրոպագանդա, որը միշտ պետք է լինի ճշմարտացի ու ռեալիստական, ինչպես նաև հետաքրքիր, մատչելի, ուրեմն է՛լ ավելի ներգործուն»։

Կուսակցության առաջադրած նոր խնդիրները լայն մասսաների սեփականությունը դարձնելու, նրանց մարքս-լենինյան տեսությամբ զինելու, ստեղծագործական ակտիվությունը բարձրացնելու գործում մեծ դեր ունի քաղաք-

կառուցվի այն հաշվով, որ պրոպագանդիստը, դասախոսը, զեկուցողը, ագի-
տատորը, քաղինֆորմատորը հանդես գան ոչ միայն և ոչ այնքան նյութը, ին-
ֆորմացիան հաղորդողի, որքան դրանք մեկնաբանողի դերում։ Նրանք պետք
է կարողանան, տեսությունը սերտորեն կապելով իրականության, կյանքի,
կոնկրետ խնդիրների հետ, օգնել ունկնդիրներին՝ անելու տեսական և գործնա-
կան ճիշտ եզրակացություններ, ձևավորել նրանց կոմունիստական համոզ-
մունքները։ Դա այժմ առավել, քան երբևէ, կարևոր է, որովհետև կոմունիս-
տական շինարարության վիթխարի մասշտաբները, միջազգային ասպարեզում
տեղի ունեցող սոցիալ-քաղաքական բազմազան իրադարձությունները պա-
հանջում են ժամանակին ու համոզիչ մեկնաբանել դրանց էությունը։
Քաղաքական լուսավորությունը, կազմակերպվելով կարգաբերված կայուն
խմբերով, հնարավորություն է ընձեռում տարբերակված մոտեցում ցուցաբե-
րել ունկնդիրների նկատմամբ, հաշվի առնել նրանց կրթական մակարդակը,
հետաքրքրությունների բնույթը, պրոֆեսիոնալ գործունեության առանձնահատ-
կությունները։
ՀԿԿ քաղաքային և շրջանային կոմիտեները, սկզբնական կուսկազմակեր-
պությունները ինչպես անցած, այնպես էլ այս ուսումնական տարվան նախա-
պատրաստվելիս հասան այն բանին, որ կոմունիստների, աշխատավորության
քաղաքական կրթությունը կազմակերպվի նոր պահանջներին, կուսակցական
ուսուցման և տնտեսագիտական կրթության կազմակերպման նոր կառուցված-
քին համապատասխան։ Կուսակցական ուսուցման համակարգում առաջին ան-
գամ ստեղծվեցին երիտասարդ կոմունիստների 166 դպրոցներ՝ մոտ 10 հազար
ունկնդիրներով և գիտական կոմունիզմի 1.135 դպրոցներ՝ 11,7 հազար ուն-
կընդիրներով։ Ավելի քան 9.000 կոմունիստ մանկավարժներ ընդգրկվեցին
ուսուցիչների համար ստեղծված գիտական կոմունիզմի դպրոցներում, որոնք
ուսումնասիրում են «Աճող սերնդի կոմունիստական դաստիարակության տե-
սության ու պրակտիկայի հրատապ պրոբլեմները զարգացած սոցիալիստա-
կան հասարակությունում»։ ՀԿԿ քաղկոմների և շրջկոմների, սկզբնական կուս-
կազմակերպությունների մեծ մասն այդ դպրոցներն ապահովեցին որակյալ,
համապատասխան պատրաստականություն ունեցող պրոպագանդիստներով,
կազմակերպեցին նրանց տարբերակված, ըստ պրոբլեմների և թեմատիկայի
ուսուցումը։
Ճիշտ են վարվում այն կուսկոմիտեներն ու կազմակերպությունները,
որոնք, ելնելով ուսուցման պլաններից, պրոբլեմներից ու թեմատիկայից,
ուսումնական տարվա ընթացքում են հոգ տանում ստեղծվող դպրոցների հա-
մար համապատասխան պրոպագանդիստներ պատրաստելու մասին։ Այսինքն,
կոմպլեկտավորումն սկսում են պրոպագանդիստների ընտրությունից ու նա-
խապատրաստումից, որպեսզի վերջիններս նախապես, ամիսներ առաջ իմա-
նան, թե հաջորդ ուսումնական տարում ո՞ր դպրոցում ի՞նչ թեմա են ուսումնա-
սիրելու, նախապատրաստվեն տեսականորեն և հոգեբանորեն, ծրագրեն իրենց
անելիքները, դրանք արտացոլեն անհատական-ստեղծագործական պլաններում։
Կոմունիստական շինարարության ներկա փուլում առաջադրվող տնտեսա-
կան ու քաղաքական-դաստիարակչական վիթխարի խնդիրների իրականացման
պայմաններում աստիճանաբար մեծանում և բարդանում են կուսակցական,
տնտեսական ղեկավար աշխատողներին ներկայացվող պահանջները։ Դրա հա-
մար էլ, ի թիվս այլ խնդիրների, հատուկ կարևորություն է ստանում նաև նը-
րանց տեսական պատրաստականության բարձրացման հարցը։ Այժմ յուրա-
քանչյուր կոմունիստ ղեկավարից պահանջվում է տիրապետել ժամանակակից
տնտեսական ու սոցիալական պրոբլեմների վերլուծության մարքս-լենինյան
մեթոդաբանությանը, կազմակերպչական, տնտեսական ու դաստիարակչական
աշխատանքի գիտական մեթոդներին, ձեռք բերել դրանց կոմպլեքսային մո-
տեցում ցուցաբերելու կարողություն։
ՀԿԿ քաղկոմներում և շրջկոմներում ստեղծված կուսակցական-տնտեսա-
կան և գաղափարախոսական ակտիվների դպրոցները կոչված են կատարելու
հենց այդ պահանջները։ Եվ դրանցից շատերը դարձել են տեսական ու սոցիա-
լական պրոբլեմների ուսումնասիրման քննարկման կենտրոններ։ Այսպիսիք



են մասնավորապես ՀԿԿ Երևանի Լենինյան, Մյասնիկյանի, Սովետական, Շա-
հումյանի, ՀԿԿ Լենինականի, Կիրովականի քաղկոմների, Արարատի, Հրազդա-
նի, Աբովյանի և այլ շրջանների դպրոցները։ Վերջին երկու տարում լրջորեն
բարելավվեց տեսական ու մեթոդական սեմինարների աշխատանքը։ Ըստ
նոր պահանջների, կուսակցական ուսուցման բարձրագույն օղակի այս համա-
կարգերում՝ գիտական կոմունիզմի, կուսակցական-տնտեսական, գաղափա-
րախոսական ակտիվի դպրոցներում, տեսական և մեթոդաբանական սեմինար-
ներում մարքս-լենինյան տեսության և արդիականության կարևորագույն հար-
ցերի ուսումնասիրությունը պետք է կազմակերպվի ինքնուրույն անհատական
պլաններով։ Դրա համար էլ այս համակարգերի ծրագրերի ուսումնասիրման
համար նախատեսված են ոչ թե հատուկ դասընթացներ, այլ որոշակի պրոբ-
լեմներ, որոնցից պետք է ընտրություն կատարեն կոմունիստները։ Քիչ չեն այն
կազմակերպությունները, ուր նախապես խնամքով պլանավորվում է այս աշ-
խատանքը։ Սեմինարների ղեկավարները, կոնսուլտանտները օգնում են
մարքս-լենինյան տեսությունն ինքնուրույն ուսումնասիրողներին, որպեսզի
նրանք, ելնելով իրենց մասնագիտական գիտելիքների հարստացման շահերից,
նախասիրություններից, ընտրեն համապատասխան պրոբլեմներ, կազմեն աշ-
խատանքի անհատական պլաններ, ձեռք բերեն անհրաժեշտ գրականություն,
գրեն ռեֆերատներ և զեկուցումներ, որոնք քննարկման են դրվում տեսական
կամ մեթոդական սեմինարներում։
Այս ամենով հանդերձ, տակավին չի հաղթահարված սովորույթի ուժ ստա-
ցած աշակերտայնությունը, խնամառուական մեթոդների կիրառումը այս բնա-
գավառում։ Դա լրջորեն խոչընդոտում է կոմունիստների ակտիվության աճին,
ինքնուրույն աշխատանքի ունակության զարգացմանը, հետևաբար և՝ ուսուց-
ման որակի և արդյունավետության բարձրացմանը։
Մարքս-լենինյան տեսությունը անհատական պլաններով ինքնուրույն ու-
սումնասիրելու վերաբերյալ կուսակցության պահանջը բխում է ուսուցման
արդի փուլի առանձնահատկություններից և պետք է կատարել հետևողականո-
րեն ու անվերապահորեն։
ՍՄԿԿ XXVI համագումարում շեշտվեց, որ կուսակցական ուսուցման գըլ-
խավոր դեմքը պրոպագանդիստն է։ Այժմ այդ պատասխանատու պարտակա-
նության ստանձնողի առջև դրված է բացառիկ կարևոր խնդիր՝ կոմունիստ-
ներին, աշխատավորությանը զինել մարքս-լենինյան հեղափոխական տեսու-
թյան, կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության խոր իմացու-
թյամբ, օգնել նրանց ճիշտ կողմնորոշվելու ներկա սոցիալ-քաղաքական բարդ
ու բազմազան իրադարձությունների մեջ, գիտակցական, ստեղծագործական
ակտիվ գործունեությամբ նպաստելու կոմունիստական շինարարության խըն-
դիրների իրագործմանը, ունկնդիրների մեջ դաստիարակելու դասակարգային
անհաշտվողականություն բուրժուական գաղափարախոսության և բարոյակա-
նության հանդեպ, լենինաբար ապրելու, աշխատելու և պայքարելու կամք։
Նման խնդիր լուծելու համար պրոպագանդիստն ինքը պետք է առաջին հերթին
ունենա տեսական բարձր պատրաստականություն, քանի որ, ինչպես նշել է
Վ. Ի. Լենինը, առանց կյանքի արմատական հարցերին տեսական պատասխան
տալու, չի կարելի քայլ անել ո՛չ պրոպագանդայի, ո՛չ ագիտացիայի, ո՛չ կազ-
մակերպման բնագավառում։
Պրոպագանդիստների որակական կազմը տարեցտարի բարելավվում է։ Կու-
սակցական ուսուցման պրոպագանդիստական ջոկատն ամբողջովին կոմպլեկ-
տավորված է բարձրագույն կրթությամբ կոմունիստներով։ Կոմերիտական լու-
սավորության ցանցի պրոպագանդիստների մոտ կեսը կոմունիստներ են, բարձ-
րագույն կրթություն ունեն ավելի քան 85 տոկոսը, իսկ տնտեսագիտական
կրթության համակարգում՝ 60 տոկոսից ավելին։ Ի դեպ, այս ցուցանիշները
բարձրացնելու ռեզերվները մեծ են մեր հանրապետությունում, քանի որ բարձ-
րագույն կրթությամբ կոմունիստների թիվն անցնում է 55 հազարից, իսկ ժո-
ղովրդական տնտեսության մեջ աշխատող բարձրագույն կրթությամբ մասնա-
գետներինը՝ 165 հազարից։
Կուսակցական այն կոմիտեներն ու կազմակերպությունները, որոնք կա-

ների զգալի մասը չի ընդգրկվում այդ գործում։ Նշանակում է՝ դեռևս բավարար չափով չեն օգտագործվում քաղաքական բարձրագույն կրթության այս օջախի հնարավորությունները, մի թերություն, որը պետք է հաղթահարվի նոր ուսումնական տարում։

Գաղափարախոսական աշխատանքի վերակառուցման վերաբերյալ կուսակցության առաջադրած խնդրի իրականացման համար պահանջվում է բազմակողմանի աշխատանք։ Վերակառուցումը պետք է իրականացվի հիմնավորապես, բոլոր օղակներում։ Դա մեր առաջընթացի հրամայական պահանջն է, միջազգային ասպարեզում անընդհատ սրվող գաղափարախոսական պայքարի պահանջը։ Իմպերիալիստական ագրեսիվ շրջաններն անընդհատ սրում են միջազգային լարվածությունը, նրանց ռազմատենչ ղեկավարները սիստեմատիկաբար ստահոդ կամպանիաներ են ծավալում Սովետական Միության և եղբայրական սոցիալիստական երկրների դեմ։ Նման պայմաններում գաղափարախոսական աշխատանքը գլխավորող բոլոր օղակների, այդ ճակատի ամեն մի զինվորի խնդիրն է՝ բուրժուական պրոպագանդային հակադրել բարձր կազմակերպվածություն, պատրաստակամություն, փաստարկված, գիտականորեն հիմնավորված պրոպագանդայի և կոնտրպրոպագանդայի հարձակողական զորեղ թափ։ Այսօր առավել կարևոր նշանակություն է ստանում մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական սերտ միասնության հետագա ամրապնդումը, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի, սոցիալիստական նվաճումները պաշտպանելու պատրաստակամության ոգով մարդկանց դաստիարակումը։

Այս պահանջներին համապատասխան, քաղաքական լուսավորության բոլոր օղակների դպրոցներում և սեմինարներում հատուկ ուշադրության են արժանի սոցիալիզմի նվաճումների, սովետական ապրելակերպի, ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականության հիմնավոր, փաստարկված պրոպագանդումը, մեր գաղափարական հակառակորդների նենգափոխումների մերկացումը։ Հարկավոր է մարքս-լենինյան տեսության ուսուցման ընթացքում ավելի լայն տեղ տալ բուրժուական գաղափարախոսության քննադատության ձևերին ու մեթոդներին նվիրված մեթոդական պարապմունքներին, տեսական և գիտագործնական կոնֆերանսներին։

Այժմ կուսակցական պրոպագանդայի առջև ծառացած բազմազան հրատապ խնդիրների մեջ առանձնահատուկ կարևորություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումի պահանջը՝ արտադրության ինտենսիվացման արագացման, էկոնոմիկայի կառավարման և պլանավորման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման, տասնմեկերորդ հնգամյակի առանցքային տարվա պլանների կատարման համար ուժերի մոբիլիզացումը։ «Այժմ հատկապես կարևոր ու հարկավոր է,— պլենումում ասաց Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— որ յուրաքանչյուր աշխատավոր հասկանա, որ պլանի կատարումը պայմանավորված է նաև իր աշխատանքային ներդրումով, որ ամենքը լավ հասկանան այն պարզ ճշմարտությունը, թե մենք որքան լավ աշխատենք, այնքան լավ կապրենք»։ Պրոպագանդիստների առաջնահերթ խնդիրն է՝ բոլոր միջոցներով քաղաքական լուսավորության համակարգի ամեն մի ունկնդրի գիտակցությանը հասցնել ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի առաջադրած կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահության ամեն տեսակ խախտումների դեմ պայքարն ուժեղացնելու մասին դրույթի էությունը, նրանց մոտ ստեղծել այն հաստատ համոզմունքը, որ սոցիալիստական կարգապահության գիտակցական ամրապնդումը էկոնոմիկայի արագ զարգացման, նյութական և հոգևոր բարիքների ավելացման, սոցիալական ու բարոյական խնդիրների հաջող լուծման կարևոր պայման է։

Միջազգային ասպարեզում ստեղծված ներկա իրավիճակում մեր տնտեսական ու սոցիալական նվաճումներն ունեն քաղաքական վիթխարի նշանակություն։ Որքան մեծ լինեն դրանք, որքան հզոր լինի մեր ժողովրդական տնտեսությունը, կուռ լինի հասարակության բարոյաքաղաքական միասնությունը, այնքան ամուր կլինեն Սովետական Միության դիրքերը միջազգային ասպարեզում, կայուն կլինի խաղաղությունը։

---



# ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՈՒՂԻՆԵՐԸ

ՄԵՐ ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ տնտեսությունն իր առաջընթաց զարգացման մեջ խոր վերափոխումների մի շարք փուլեր է անցել։ Արտադրության ինտենսիվացման կուրսն իր պատմական նշանակությամբ և հետևանքներով կարող է դասվել այնպիսի վերափոխումների շարքում, ինչպիսին է սոցիալիստական ինդուստրացումը, որն արմատապես փոխեց երկրի դեմքը։

ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերում ինտենսիվացումն անվանվել է սոցիալ-տնտեսական կարևորագույն պրոբլեմների լուծման հզոր միջոց, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման մայրուղի։

Խմբագրության հանձնարարությամբ լրագրող ԼԵՎՈՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆԸ Մոսկվայում հանդիպում ունեցավ սովետական հայտնի տնտեսագետ, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի՝ հիմնական ֆոնդերի, կապիտալ ներդրումների և նոր տեխնիկայի արդյունավետության պրոբլեմների գիտական խորհրդի նախագահ «Վոպրոսի էկոնոմիկի» ամսագրի գլխավոր խմբագիր, գիտատեխնիկական ընկերության նախագահ, ակադեմիկոս ՏԻԳՐԱՆ ՍԵՐԳԵԵՎԻՉ ԽԱՉԱՏՈՒՐՈՎԻ հետ ու նրան խնդրեց պատմել ինտենսիվացման էության և ուղիների մասին՝ այն պրոբլեմների լույսի ներքո, որոնք առաջադրել է ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումը։

**Թղթ.**— Տիգրան Սերգեևիչ, ինչո՞վ է պայմանավորված ընթացիկ հնգամյակում իրականացվող անցումը տնտեսական աճի առավելապես ինտենսիվ ձևերին։



**Խաչատուրով**— *Նախ կցանկանայի ընթերցողներին պարզաբանել ինտենսիվացման էությունը։ Դա կայանում է նրանում, որ տնտեսական առաջընթացի գլխավոր աղբյուրն արդեն ոչ թե լրացուցիչ ռեսուրսների ներգրավումն է, այլ դրանց առավել արդյունավետ օգտագործումը։ Այլ խոսքերով՝ ինտենսիվ զարգացման դեպքում արտադրության արդյունքներն աճում են ավելի արագ, քան ծախսերը։*

*Մեր էկոնոմիկան հիմնականում ավարտել է իր զարգացման որոշակի պատմական փուլը՝ նյութական արտադրուժերի գերազանցապես էքստենսիվ ՝ուտակումը, աշխատանքային ռեսուրսների մոբիլիզացումը և առավելագույն օգտագործումը։ Այդ փուլում հասել ենք սկզբունքային կարևոր արդյունքների։ Սակայն զարգացման դիալեկտիկան այնպիսին է, որ անցնելով այդ բնագիծը, մենք պետք է առավելագույնս իրացնենք պլանային սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունները, որոնք հնարավորություն են ընձեռում վերելքի հասնելու ռեսուրսների լրիվ օգտագործման հաշվին. ես նկատի ունեմ և՛ աշ-*

խատուժը, և՛ նյութական բազան։ Անշուշտ, դա չի նշանակում, թե արդեն կարելի է լիովին հրաժարվել զարգացման էքստենսիվ մեթոդից։ Չէ որ շատ դեպքերում, առանձնապես նոր արտադրությունները կամ նոր շրջանները յուրացնելիս այդ մեթոդը կարող է լինել միակ հնարավորը։

Ինտենսիվ ուղուն անցնելուն օբյեկտիվորեն նպաստում են մի շարք հանգամանքներ։ Նախ, կրճատվում է աշխատանքային ռեսուրսների բնական հոսքը։ 1980 թ. ժողովրդական տնտեսության աշխատանքային համալրումը քանակապես արդեն զգալիորեն պակաս էր 1975 թվականի համեմատությամբ։ ՍՍՀՄ եվրոպական մասում նվազում է աշխատունակ բնակչության բացարձակ աճը, պակասում է աշխատող ձեռքը։ Հարկ է ավելացնել, որ կտրուկ նվազում է նաև գյուղական բնակչության հաշվին աշխատուժի հոսքը դեպի արդյունաբերություն։

Այսպիսի նոր պայմաններում, երբ ժողովրդական տնտեսությունը չի ստանում աշխատուժի լրացուցիչ համալրում, արտադրության ողջ աճը գործնականում հնարավոր կլինի միայն աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ։

Դժվարություններ կան էներգիայի և հումքի արտադրության բնագավառում։ Այստեղ գործոնները զուտ տնտեսական բնույթի են։ Ռեսուրսների արդյունահանումը մշտապես բարդանում ու թանկանում է։ Այսպես, անցած հնգամյակում մեկ տոննա նավթի կամ ածխի արդյունահանման ծախսերը նկատելիորեն ավելին էին, քան 60-ական թվականներին կամ նույնիսկ 70-ական թթ. սկզբներին։ Առաջիկայում դրանք ավելի կմեծանան։

Հումքի և էներգիայի հիմնական շրջանները դեպի երկրի արևելք ու հյուսիս փոխադրվելուն զուգընթաց ավելանում են տրանսպորտի և կապի զարգացման, փոխադրումների, նյութատեխնիկական մատակարարման սիստեմի, շրջակա միջավայրի պահպանության ծախսերը։ Աստիճանաբար սպառվում են հումքի առավել հարուստ և մատչելի հանքավայրերը, իսկ դա նույնպես ավելացնում է արդյունահանման ծախսերը։ Այս դժվարությունները, անշուշտ, միայն մեր երկրին չեն վերաբերում, դրանք ունեն համաշխարհային, համապարփակ բնույթ։

**Թղթ.**— Մենք բոլորս մեծացել ենք մեր երկրի հարստությունների անսահմանափակության, նրա ընդերքի և աշխատանքային ռեսուրսների անսպառության գիտակցությամբ։ Եվ, ահա, կանգնած ենք այն բանին դեմ հանդիման, որ այդ ռեսուրսները սահմանափակ են, և այսուհետ մեր հարստությունը պայմանավորված է ոչ թե պետության զբաղեցրած տարածությունների լայնարձակությամբ կամ աշխարհագրական դիրքի շահավետությամբ...

**Խաչատուրով**— Այո, այդպիսի իրավիճակը հարկ է լիովին գիտակցել և մեր վարքագիծը փոխել դրան համեմատ։ Եվ, ինչպես կուսակցության Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումում իրավացիորեն նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովը, չնայած այն բանին, որ մեր երկիրը, իրոք, ունի վիթխարի ռեսուրսներ և դրանցից շատերի արդյունահանմամբ առաջնակարգ տեղ է գրավում աշխարհում, անհրաժեշտ է հաշվենկատորեն օգտագործել արտադրված յուրաքանչյուր տոննա ածուխը և նավթը, ամեն մի խորանարդ մետր գազն ու փայտը։

Ահա թե ինչու մենք պետք է հենվենք աճի ինտենսիվ գործոնների վրա։ Եվ, ընթանալով կուսակցության XXVI համագումարի կուրսով, ընթացիկ հնգամյակում մենք ձգտում ենք արտադրության աճը ձեռք բերել առավելապես հետագա ինտենսիվացման հաշվին։

Կապիտալ ներդրումների ավելացման նկատմամբ ազգային եկամտի առաջանցիկ աճին հասնելը հեշտ խնդիր չէ։ Պետք է նկատի ունենալ, որ մեր էկոնոմիկայի զարգացման ոչ միայն սկզբնական փուլերում, երբ առաջին պլանում էին քանակական ցուցանիշները՝ կառուցվում էին նորանոր ձեռնարկու-



թյուններ, ընդլայնվում էին ցանքատարածությունները, արտադրության մեջ էին ներգրավվում ավելի ու ավելի մեծ թվով մարդիկ, այլև նույնիսկ տասներորդ հնգամյակում կապիտալ ներդրումներն ավելանում էին ավելի արագ։

**Թղթ.**— Կուսակցության XXVI համագումարում նշվեց, որ էկոնոմիկայի ինտենսիվացման, նրա արդյունավետության բարձրացման իմաստն այն է, որ արտադրական արդյունքներն աճեն ավելի արագ, քան ծախսերը, որպեսզի արտադրության մեջ ներգրավված պակաս ռեսուրսներով հասնենք առավել մեծ արդյունքների։ Ինչպիսի՞ ուղիներ կարող ենք նշել այդ նպատակների գործնական իրականացման համար։

**Խաչատուրով**— Արտադրության ինտենսիվացման և արդյունավետության առանցքային ցուցանիշն աշխատանքի արտադրողականությունն է։ Անցած հնգամյակում արդյունաբերության մեջ այն բարձրացավ 17 տոկոսով։ Դա, անշուշտ, բավարար չէ, և ինչպես նշեց Յու. Վ. Անդրոպովը ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում, «էկոնոմիկայի արդյունավետության գլխավոր ցուցանիշը՝ աշխատանքի արտադրողականությունը, աճում է այնպիսի տեմպերով, որոնք մեզ չեն կարող բավարարել»։ Ընթացիկ հնգամյակում այն պլանավորված է 23 տոկոսի չափով։ Ընդհանուր առմամբ, ժողովրդական տնտեսության մասշտաբով, այդ գործոնի հաշվին անհրաժեշտ է ապահովել ազգային եկամտի աճի 90 տոկոսը և մոտ 17 մլն մարդու աշխատանքի պայմանական խնայողություն։

Այստեղ ես կցանկանայի հատկապես շեշտել, որ աշխատանքի արտադրողականության աճի պլանների թերակատարումն ուժեղացնում է աշխատուժի դեֆիցիտը։

**Թղթ.**— Պրակտիկան վկայում է, որ արտադրության ինտենսիվացումը մի շարք գումարելիների գումար է...

**Խաչատուրով**— Դա այդպես է։ Բայց կարծում եմ, կարելի է առանձնացնել աշխատանքի մի քանի գլխավոր, բայց սերտորեն շաղկապված ուղղություններ։ Հիմնական գումարելիներից մեկը՝ տեխնիկական առաջընթացն է, նոր տեխնիկայի այնպիսի լավագույն նմուշների, պրոգրեսիվ տեխնոլոգիայի լայն մասշտաբներով ու արագ ներդրումը, որոնք հանգեցնում են ծախսերի նվազեցման։ Առավել կատարյալ մեքենաների կիրառումը վերարտադրության ինտենսիվ տիպի կարևոր գիծն է։ Այսօր աշխատանքի արտադրողականության աճի զգալի մասը ստանում ենք այդ գործոնի հաշվին։ Սակայն հարկ է նկատի առնել, որ առայժմ երկրի արդյունաբերության բանվորների մոտ 40 տոկոսը զբաղված է առավելապես ցածր արտադրողական, քիչ հրապուրիչ, երբեմն էլ ծանր ձեռքի աշխատանքով։

Արտադրապրոցեսների մեքենայացման ասպարեզում առավել խոստումնալից միջոցը արդյունաբերական ռոբոտների լայն կիրառումն է։ Շատ գործողություններ նրանք կատարում են մարդուց ավելի արագ, ճշգրիտ և էժան։ Մարդու այդ անխոնջ օգնականները կարող են աշխատել վակուումի և ծայրահեղ ջերմային ռեժիմների պայմաններում։ Արդեն այժմ երկրում գործում են շուրջ հինգ հազար ռոբոտ-մանիպուլյատորներ, իսկ հնգամյակի վերջում դրանց թիվը կհասնի մի քանի տասնյակ հազարի։ Ռոբոտատեխնիկայի կիրառումը հնարավորություն է ընձեռում ոչ միայն տնտեսելու մարդու աշխատանքը, այլև ապահովելու արտադրանքի որակի բարձրացումը։ Իսկ որակի բարձրացումը՝ հետևաբար արտադրանքի ծառայության ժամկետի երկարացումն ինտենսիվացման ևս մեկ գումարելին է։

Ինտենսիվացման առավել կարևոր բաղադրամասեր են դառնում միկրոէլեկտրոնիկան, միկրոպրոցեսորները, կառավարման ավտոմատացված սիստեմները, որոնց ներդրման նպատակով ընթացիկ հնգամյակում մեծ ծավալի աշխատանքներ են կատարվում։

*Արտադրության արդյունավետության և արտադրողականության կտրուկ աճին նպաստում են նաև այնպիսի նոր տեխնոլոգիաները, ինչպես ուղղակի վերականգնման մեթոդով երկաթի ստացումը, փոշեմետալուրգիան, առաջադրված հատկանիշներով կոմպոզիցիոն նյութերի նոր տեսակների երևան գալը…*

**Թղթ.**— Տիգրան Սերգեևիչ, կուսակցության Կենտկոմի նոյեմբերյան պլենումում նշվեց. «Նոր մեթոդը, նոր տեխնիկան ներդնելու համար հարկ է լինում այսպես թե այնպես վերակառուցել արտադրությունը, իսկ դա անդրադառնում է պլանի կատարման վրա: Մանավանդ որ արտադրության պլանի ձախողման համար պատասխան են պահանջում, իսկ նոր տեխնիկայի թույլ արմատավորման համար ամենաշատը, ասենք, թեթև կհանդիմանեն»:
Իսկ եթե տնտեսական ղեկավարը շահագրգռված չէ նորը ներդնելու հարցում, ապա տնտեսագետների տեսական մշակումները լավագույն դեպքում հիմնված կլինեն եզակի նմուշների վրա, իսկ վատթարագույն դեպքում այդպես էլ կմնա թղթի վրա…

Խաչատուրով— *Դա լուրջ պրոբլեմ է; Եթե վերցնենք ընդհանուր առմամբ, ապա ժողովրդական տնտեսությունում ամեն տարի իրացվում է նոր մշակումների միայն մի մասը, ձգձգվում են դրանց ներդրման ժամկետները:*

*Նոր տեխնիկան և տեխնոլոգիան, սկզբնական շրջանում, իրոք, միշտ չէ, որ շահավետ են ձեռնարկության. աճում է արտադրանքի ինքնարժեքը, նվազում շահույթը, պակասում են տնտեսական խթանման ֆոնդին կատարվող մասհանումները: Ահա և ստացվում է, որ պլանի ընթացիկ շահերի և պրոգրեսիվ տեխնիկայի ներդրումից ակնկալվող՝ թույլ գիտակցված հեռանկարների միջև ընտրությունը հաճախ վերջինիս օգտին չի լինում:*

*Այդպիսի իրավիճակից ելքի որոնումներին կնպաստի որոշ ճյուղերում կուտակված արժեքավոր փորձի ուսումնասիրությունը: Այնտեղ ձեռնարկությունների և գիտական հաստատությունների խրախուսումը ուղղակի կախման մեջ է դրված նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ռեալ տնտեսական արդյունքից: Ստեղծված է խթանման հատուկ ֆոնդ, որի աղբյուրը տեխնիկական նոր լուծումների իրացման շնորհիվ ինքնարժեքի իջեցումից ստացված շահույթից արվող մասհանումներն են: Կիրառվում են նաև խրախուսական վերադիրներ՝ բարձր արդյունավետ արտադրանքի գների վրա:*

*Առաջարկություններ են արվում նաև պրոգրեսիվ արտադրանքի թողարկումն ավելացնելու համար ձեռնարկություններին խրախուսել փոխարինվող արտադրատեսակի համեմատությամբ նորի արդյունավետության շնորհիվ աշխատանքի արտադրողականության աճի ծավալը և տեմպերը պլանավորելու միջոցով:*

*Ես արդեն ասացի, որ ինտենսիվացման գումարելիները սերտորեն փոխկապակցված են, և դա չպետք է անտեսել, երբ պրոբլեմի մատչելի պարզաբանման համար դրանք հաճախ մասնատվում են:*

*Այդ առումով, վերոշարադրյալի հետ սերտորեն շաղկապվում է ֆոնդահատույցի պրոբլեմը՝ ինտենսիվացման ևս մեկ բաղադրամասը:*

*Ֆոնդահատույցը՝ հիմնական արտադրաֆոնդերի յուրաքանչյուր ռուբլու դիմաց ստացվող արտադրանքի քանակը, ավելանում է արտադրական հզորությունների գործարկման և յուրացման արագացման հաշվին: Դրան կարելի է հասնել, առաջին հերթին, գործող ձեռնարկությունների վերակառուցմամբ, որի վրա էլ շեշտը դրվում է ընթացիկ հնգամյակում: Վերակառուցման և ընդլայնման ծախսերը շատ դեպքերում 2—3 անգամ ավելի արագ են հատուցվում, քան նորը կառուցելիս: Հարցն այն է, որ տեխնիկական վերազինման դեպքում մենք միջոցները ծախսում ենք հիմնականում մեքենաների և սարքավորումների համար, տնտեսելով շենքերի կառուցման մեջ:*

**Թղթ.**— Պատկերացնենք իրականում հանդիպող մի այսպիսի իրադրություն.կիրառելով գիտատեխնիկական նորույթը, ձեռնարկությունը թողարկել է, ասենք, բարձր արտադրողական հաստոց: Դուք առիթ չե՞ք ունեցել տեսնելու այդպիսի մեքենան սպառողի գործնական բակում, ձյունածածկ կամ անձրևի տակ, այսինքն՝ պիտանի միայն որպես մետաղի ջարդոն…



Խաչատուրով— *Դա, անշուշտ, աններելի երևույթ է, որն էականորեն ազդում է ֆոնդահատույցի վրա: Ամբողջությամբ վերցրած, երկրում չտեղադրված սարքավորումների արժեքը հասնում է միլիարդների: Այդ տեխնիկայով կարելի էր հագեցնել տասնյակ խոշոր ձեռնարկություններ և արտադրանք ստանալ: Ժողովրդական բարիքի նկատմամբ խնայողական վերաբերմունքի հետ մեկտեղ այստեղ բավական են տնտեսավարի տարրական հաշվարկները, և այդ երևույթն անվերադարձ կանհետանա: Հենց դրա համար էլ, խոսելով արտադրական հզորությունների մասին, ես շեշտեցի դրանց գործարկումն ու յուրացումը: Կրկնում եմ՝ ֆոնդերի ստացումը դեռևս գործի մի մասն է, անհրաժեշտ է դրանք գործարկել և յուրացնել:*

**Թղթ.**— Ուրեմն, «կառուցել արտադրական նոր տարածություն կամ յուրացնել նոր տեխնիկան հին տարածությունների վրա» երկընտրանքում, եթե խոսքը չի վերաբերում նոր արտադրության զարգացմանը կամ նոր շրջանների յուրացմանը, ինտենսիվացման նպատակով անհրաժեշտ է ընտրել վերջի՞նը:

Խաչատուրով— *Այո՛, բայց խոսքը ոչ միայն արտադրական հզորությունների մասին է, այլև ինֆրակառուցվածքի, որի զարգացումն ինտենսիվացման կարևոր բաղադրամասերից մեկն է: Մեր երկրում ինդուստրացումն իրականացվեց չափազանց բարձր տեմպերով, և հաճախ հիմնական ուշադրությունը նվիրվում էր արտադրական նոր հզորությունների ստեղծմանը, իսկ ինֆրակառուցվածքը երկրորդ պլան էր մղվում: Մինչդեռ, չնայած այն բանին, որ նյութատեխնիկական մատակարարման, տրանսպորտի ու կապի միջոցների, պահեստային տնտեսության զարգացմանը հատկացված միջոցներն անմիջականորեն չեն ավելացնում արտադրանքի ծավալը, այնուամենայնիվ, դրանց շնորհիվ պահպանվում է արտադրվածը, դրա որակը և այլն: Եվ միանգամայն ակնհայտ է, որ աճի ինտենսիվ մեթոդներին անցնելիս, սպասարկող այդ ճյուղերի կազմակերպման և զարգացման տեմպերի արագացումն ու կատարելագործումը հասունացած անհրաժեշտություն են:*

**Թղթ.**— «Պահպանել արտադրվածը…» խնայողական էկոնոմիկայի վերաբերյալ այս հրատապ պահանջը, ակնհայտորեն նույնպե՞ս նպաստում է ինտենսիվացմանը:

Խաչատուրով— *Այո՛, նյութերի, վառելիքի, հումքի և էներգիայի խնայողությունը, թափոնների ռացիոնալ օգտագործումը ինտենսիվացման կարևոր գումարելիներից են: Այդ նպատակին կարելի է հասնել սակավ և անթափոն տեխնոլոգիաների, էներգա և նյութախնայիչ տեխնոլոգիաների ներդրման, երկրորդային ռեսուրսների ուտիլացման շնորհիվ:*

*Հայտնի է, որ արտադրողականության բարձրացումն առավելապես պայմանավորված է էներգիայի ապահովվածությամբ: Վերջին տարիներին աշխատանքի էներգազինվածությունը՝ յուրաքանչյուր մարդ-ժամի հաշվով օգտագործված էներգիայի քանակությունը, արդյունաբերության մեջ նկատելիորեն աճել է: Սակայն արդեն ասացի, որ հարկ է նկատի ունենալ վառելանյութի, նախ և առաջ նավթի ու գազի ռեսուրսների սահմանափակ լինելը: Այս պայմաններում մեծանում է ջերմաէներգետիկ հաշվեկշռի կառուցվածքի բարելավման և ռեսուրսների ռացիոնալ օգտագործման նշանակությունը: Վառելանյութի մեջ նավթի տեսակարար կշռի նվազեցմանը և ածխով ու գազով նրա*

փոխարինմանը, էներգիայի ոչ ավանդական աղբյուրների յուրացմանը (ատոմային, արևի, օվկիանոսի, գեոթերմալ, գործնականում անսպառ՝ ջերմամիջուկային և այլն) զուգընթաց, արտադրության ինտենսիվացմանը կարող են նպաստել նաև էլեկտրակայանների էներգաբլոկների մոդեռնացումը, էներգիայի հաղորդման ժամանակ թույլ տրվող կորուստների պակասեցումը, վառելանյութի ծախսումների նորմաների կրճատումը։ Վերցնենք թեկուզ էներգիայի ծախսման նորմաների նվազեցումը։ Տեխնոլոգիայի ոչ կատարյալ լինելու հետևանքով անվերադարձ կորչում է էներգիայի զգալի մասը։ Այ, եթե հաջողվեր, թեկուզ մի քանի տոկոսով բարելավել երկրորդային ջերմության ուտիլացումը, դա համարժեք կլիներ այն բանին որ մենք համապատասխանաբար ավելացնեինք վառելանյութի արդյունահանումը։

Մենք շատ մետաղ ենք արտադրում, բայց այն չի բավականացնում և դա կասեցնում է մեր էկոնոմիկայի զարգացումը։ Պատճառն այն է, որ մետաղն օգտագործվում է ոչ ռացիոնալ։ Մինչդեռ միայն մեքենաշինության և մետաղամշակման մեջ թափոնների գոնե կիսով չափ կրճատումը համարժեք է սև մետաղների պատրաստի գլանվածքի թողարկումը 10 տոկոսով ավելացնելուն։ «Արդյունաբերության հացի» տնտեսմանը մեծապես կնպաստի առաջավոր տեխնոլոգիայի ներդրումը։ Խոսքը նախ և առաջ կտրելու փոխարեն ճնշման միջոցով առարկաների պատրաստման, երկաթի ուղղակի վերականգնման, փոշեմետալուրգիայի լայն զարգացման, բիմետաղների արտադրության մասին է։ Մետաղի հսկայական խնայողություն է տալիս մեքենաների ու սարքավորումների ավելորդ քաշի նվազեցումը, առավել որակյալ մետաղների կիրառմամբ դրանց ծառայության ժամկետների երկարացումը, մետաղները պոլիմերներով փոխարինելը։ Մետաղի խնայողությունն անիմաստ է առանց սև և գունավոր մետաղների երկրորդային հումքի օգտագործման։ Պատկերավոր լինելու համար հիշեցնեմ, որ երկրորդային ալյումինը 2—2,5 անգամ ավելի էժան է, քան բոքսիդներից ստացվող «թևավոր» մետաղը, իսկ թափոններից ստացված մեկ տոննա պողպատը 10—20 անգամ էժան է հանքաքարից ստացվածից։

**Թղթ.**— Տնտեսավարների ձգտումներից ու ցանկություններից բացի, ինտենսիվացման Ձեր թվարկած միջոցներին պե՞տք է նպաստեն նաև ռեալ շահագրգռվածությունն ու պատասխանատվությունը բարձրացնող ինչ-որ օբյեկտիվ խթաններ։ Մենք, թվում է, մոտենում ենք տնտեսական մեխանիզմի կատարելագործման հարցին։

**Խաչատուրով**— Իրոք, էկոնոմիկայի ինտենսիվացումն անիմաստ է առանց տնտեսական մեխանիզմի կատարելագործման։ Այս ասպարեզում առաջին պլանում ճյուղային կարգավորումն է, որի էությունը գիտատեխնիկական պրոգրեսն ապահովող հեռանկարային ճյուղերի առաջընթաց զարգացումն է, լինի դա միկրոէլեկտրոնիկան թե սարքաշինությունը, ռոբոտատեխնիկական կամ քիմիական արդյունաբերությունը։

Յուրաքանչյուր առանձին ճյուղի ներսում նույնպես անհրաժեշտ է բարելավել համամասնությունը՝ մեծացնելով տնտեսապես առավել շահավետ արտադրությունների բաժինը։

Խիստ կարևոր է արտադրության կազմակերպման կոմպլեքսայնության սկզբունքների հետևողական իրականացումը, գերատեսչական պատնեշների վերացումը, ճյուղային և տերիտորիալ պլանավորման լավագույն զուգակցումը։ Մեծ կորուստների տեղիք է տալիս ձեռնարկությունների բազմապրոֆիլայնությունը, օժանդակ և նախապատրաստական արտադրությունների չափազանց զարգացումը։ Անբավարար մասնագիտացումը հանգեցնում է այն բանին, որ միևնույն գործարանը պատրաստում է ամեն ինչ՝ դետալների ձուլումից մինչև հաստոցի փաթեթավորման համար փայտյա ձողերը։ Այդ առումով անհրաժեշտ է նվազեցնել վերանորոգողների, գործիքագործների, փոխա-



դրող և պահեստային բանվորների տեսակարար կշիռը, որն առայժմ շատ մեծ է։ Այդ օժանդակ արտադրություններում աշխատանքի արտադրողականությունը ցածր է, իսկ ինքնարժեքը՝ զգալիորեն բարձր, քան մասնագիտացված ձեռնարկություններում։

**Թղթ.**— Ցուցանիշների նոր սիստեմում առանձնահատուկ դեր է հատկացվում նորմատիվ զուտ արտադրանքին…

**Խաչատուրով**— Արդյունաբերության և շինարարության մեջ աշխատանքը նորմատիվ զուտ արտադրանքով գնահատելու սկզբունքին անցնելը ընթացիկ հնգամյակի տնտեսական կարևորագույն ձեռնարկումներից է։ Նախկինում, երբ ծավալային ցուցանիշները, որպես արտադրության ընդհանուր արդյունքների արտահայտություն, որոշվում էին համախառն կամ ապրանքային արտադրանքով և առավել բարձր էր գնահատվում այն կոլեկտիվի աշխատանքը, որտեղ բարձր էին նյութական ծախսումները, անցյալ աշխատանքի ծախսումները։ Նոր ցուցանիշի դեպքում կոլեկտիվները դրվում են միատեսակ պայմանների մեջ և խրախուսվում են փաստացի ծախսման աշխատանքի համար՝ չհաշված հումքի և նյութերի արժեքը։

Նորմատիվ զուտ արտադրանքի սկզբունքի կիրառման փորձն արդեն կուտակվել է, և այժմ իրականացվում է ձեռնարկությունների, միավորումների ու արդյունաբերության վերամշակող ճյուղերի մասսայական անցումը նոր ցուցանիշի։

**Թղթ.**— Բայց, ցավոք, տխրահռչակ «համախառն»-ն առաջվա պես իրեն զգացնել է տալիս։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումում, փաստորեն չի նվազում արտադրանքի նյութատարությունը, և պլանները առաջվա պես կատարվում են արտադրական մեծ ծախսերի գնով։

**Խաչատուրով**— Միանգամայն իրավացի եք։ Տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին դեռևս 1979 թ. ընդունված որոշումը դանդաղ է ներդրվում։ Պատճառները շատ են, սակայն գլխավորը, ըստ երևույթին, այն է, որ դեռևս գործում է իներցիայի ուժը, հնի նկատմամբ սովորույթի ուժը։ Ոչ ոք, իհարկե, նորի դեմ բացահայտորեն հանդես չի գալիս, խոսքով բոլորն են կողմնակից, սակայն տնտեսավարների մի մասը, վկայակոչելով վերակառուցման դժվարությունները և անցման մանրակրկիտ նախապատրաստության անհրաժեշտությունը, տարեցտարի հետաձգում է նախատեսված միջոցառումների կոմպլեքսային իրականացումը։ Մյուսները փորձում են սահմանափակվել «ճակատամասի գույնը և ցուցանակը» փոխելով՝ թողնելով նախկին բովանդակությունը։ Իսկ որոշ մասը, ինչպես ասաց Յու. Վ. Անդրոպովը, հավանաբար, պարզապես չգիտե, թե ինչպե՞ս սկսել գործը։ Նրանք թերևս գտնում են, որ ընդունելով նոր ցուցանիշները, դրանք կգործեն «իրենք իրենց»։ Մի տնտեսավար, օրինակ, համառորեն պնդում էր, որ գիտնականները պարզաբանեն, թե ինչու իրենց մոտ նորմատիվ զուտ աթտադրանքի անցնելուց հետո էլ արտադրանքի նյութատարությունը չի նվազում։ Նրան բացատրեցին՝ դա նրանից է, որ դուք այդ ուղղությամբ ոչինչ չեք անում։

Իներցիան բազմադեմ է։ Առանձին ձեռնարկություններում կարևորագույն որոշումների կատարման նպատակով մշակելով միջոցառումների պլաններ, դրանց հետ չեն ծանոթացնում ո՛չ միայն բանվորներին, այլև վարպետներին, արտադրամասերի տնտեսագետներին։ Մինչդեռ արտադրության ինտենսիվացումը, տնտեսական աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործումը ոչ միայն պետպլանի ու գերատեսչությունների գործը չէ, այլև տեղական մար-

մինների, որոնց վերջին տարիներին լայն իրավունքներ են տրված։ Դա ձեռնարկությունների բոլոր օղակների ղեկավարների, բանվորների, ըստ էության, մեզանից յուրաքանչյուրի գործն է։

**Թղթ.**— Այո, ամեն մի գործ մարդն է կատարում։

**Խաչատուրով**— *Եվ «մարդկային գործոնը» արտադրության ինտենսիվացման մեջ վճռական դեր է խաղում։ Ինտենսիվացման վերը նշված շատ բաղադրամասերի իրականացման մեջ այդ գործոնի նշանակությունը դժվար է գերագնահատել։*

*Այսօրվա գլխավոր խնդիրը աշխատանքային և արտադրական կարգապահության խախտումների նկատմամբ խստագույն պահանջկոտության մթնոլորտի ստեղծումն է։ Արտադրության վերջնական արդյունքների վրա դրականորեն է ազդում նաև ձեռնարկություններում աշխատանքի գիտական կազմակերպման ներդրումը։ Ծանրակշիռ արդյունքներ են ակնկալվում աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային ձևի կիրառումից։ Այն ամրապնդում է կոլեկտիվիստական հիմունքներն ու փոխօգնությունը, բարձրացնում յուրաքանչյուրի շահագրգռվածությունը վերջնական լավագույն արդյունքների հասնելու գործում։*

*Կոմունիստական շինարարության արդի փուլում կուսակցության տնտեսական ստրատեգիայի գլխավոր առանձնահատկությունն արտադրության ինտենսիվացման և ժողովրդական բարեկեցության բարձրացման անխզելի կապն է։ Կենսամակարդակի բարձրացումը՝ աշխատավորների կյանքի, աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավումը, աշխատանքի արտադրողականության աճի և արտադրության ինտենսիվացման կարևոր գործոն է։ Վերջին հնգամյակներում բազմապատկված ազգային եկամուտը, դրա զգալի մասի օգտագործումը սոցիալական կարիքների՝ բնակարանային ու կուլտուրական շինարարության, աշխատավարձի բարձրացման, ինչպես նաև առաջին անհրաժեշտության առարկաների և կուլտուր-կենցաղային նշանակության ապրանքների արտադրության ու սպառման նպատակով, ինտենսիվացման կարևոր բաղադրամասերից են, որը չի կարելի անտեսել։*

*Միաժամանակ չպետք է մոռանանք, որ բարեկեցության բարձրացումը ևս իր հերթին պայմանավորված է արտադրության ինտենսիվացմամբ, մեր աշխատանքի որակի և արդյունավետության բարձրացմամբ։ «Հասարակությունը կարող է բաշխել միայն այն, ինչ արտադրված է»,— ասված է ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—85 թթ. և մինչև 1990 թ. ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում։*

*Պետությունը, հասարակությունը նախադրյալներ են ստեղծում քաղաքացիների լիարժեք, բարեկեցիկ կյանքի համար, իսկ դրանց կենսագործումը մեզանից յուրաքանչյուրի պարտքն է։*

---

# ՖԻՆԱՆՍՆԵՐԸ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Թ. Ա. ՉԱՏԻԿՅԱՆ**
ՀՍՍՀ ֆինանսների մինիստրի
առաջին տեղակալ

*ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՐԵՆ ԻՐԱԿԱՆԱՑՆԵԼՈՎ ագրարային քաղաքականությունը, կուսակցությունը մեծ աշխատանք է կատարում գյուղատնտեսական արտադրության վերելքն ապահովելու համար։ Երկրի էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման հիման վրա զգալիորեն ամրապնդվել է ագրոարդյունաբերական համալիրի նյութատեխնիկական բազան, բարձրացել աշխատանքի արտադրողականությունը, արտադրության արդյունավետությունը։*

*Այդ տեղաշարժերը բնորոշ են նաև մեր հանրապետության գյուղատնտեսությանը։ Հացահատիկի տարեկան համախառն բերքը յոթերորդ հնգամյակի 120,3 հազար տոննայից տասներորդ հնգամյակում հասավ 222,3 հազար տոննայի, մսի արտադրությունը (սպանդային քաշով) 38,5 հազար տոննայից 81,8 հազարի, կաթինը՝ 327,1 հազար տոննայից 473,1 հազարի, ձվինը՝ 182,7 մլն հատից 417,7 մլն հատի, բանջարեղենինը՝ 160,8 հազար տոննայից 442,5 հազարի, պտղինը՝ 50 հազար տոննայից 151 հազարի, խաղողինը՝ 120 հազար տոննայից 222,3 հազար տոննայի և այլն։*

*1965 թվականի համեմատությամբ, երկրի բնակչության թիվը 35 միլիոնով աճելու հետ մեկտեղ, էապես ավելացել է սննդամթերքների սպառումը։ Այսօր սովետական մարդու սննդի օրաբաժնի կալորիականությունը համապատասխանում է ֆիզիոլոգիական նորմաներին։*

*Սննդամթերքների արտադրության աճը երկրում իրականացվում է ագրոարդյունաբերական կոմպլեքսի նյութատեխնիկական բազայի ամրապնդման միջոցով։ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո անցած 15 տարում երկրի գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը կազմեց մոտ 400 մլրդ ռուբլի, որը չորս անգամ գերազանցում էր ողջ նախընթաց ժամանակաշրջանինը։ Դրա շնորհիվ գյուղատնտեսական ձեռնարկությունների և միջտնտեսային կազմակերպությունների հիմնական արտադրաֆոնդերի գումարը 1981 թվականի սկզբներին հասավ 227 մլրդ ռուբլու։ Մեր հանրապետությունում այդ նույն տարիներին գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները կազմեցին 2.559 մլն ռուբլի։ 1980 թվականին հանրապետության գյուղատնտեսության հիմնական ֆոնդերի գումարը հասավ 1.630 մլն ռուբլու։*

*Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի հզորացմանը զուգընթաց միջոցառումներ իրականացվեցին կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման, գյուղի աշխատավորության նյութական շահագրգռվածության ուժեղացման նպատակով։ Բարձրացվեցին գյուղատնտեսական մթերքների պետական գնման գները, պլանից ավելի մթերքների վաճառքի համար սահմանվեց հավելավճար, իրականացվեց կոլտնտեսությունների փոխադրումը ուղղակի բանկային վարկավորման, իսկ սովխոզներինը՝ լրիվ տնտեսական հաշվարկի։ Այդ ամենի շնորհիվ զգալիորեն ամրապնդվեց գյուղատնտեսական հաշվարկի։ Այդ ամենի շնորհիվ զգալիորեն ամրապնդվեց գյուղա-*

սը համալրելու համար, ինչպես նաև բարձրացնել ցածր շահութաբեր տնտեսությունններին տրված հավելավճարի օգտագործման արդյունավետությունը։

Նվազ շահութաբեր և վնասով աշխատող կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական և ֆինանսական վիճակը բարելավելու նպատակով որոշված է դուրս գրել և հետաձգել պետական բանկին նրանց ունեցած 20,8 մլրդ ռուբլու վարկերի պարտքերը։ Մեր հանրապետությունում այդ գումարը հասնում է 89 մլն ռուբլու, որից պարտքերի դուրսգրումը՝ 50 մլն, պարտքերի հետաձգումը՝ 39 մլն ռուբլի։

Խնդիրը տնտեսությունների նկատմամբ այդ զիջումների ճիշտ կիրառումն է։ Այս հարցում լուրջ անելիքներ ունեն պետբանկի ու ֆինանսական մարմինների աշխատողները։ Հարկ է նկատի ունենալ, որ վարկերի պարտքերի դուրսգրումն ու հետաձգումը կատարվելու է միայն վնասով աշխատող ու ցածր շահութաբեր կոլտնտեսությունների ու սովխոզների նկատմամբ։

Փոփոխվում է նաև կոլտնտեսություններից գանձվող եկամտահարկի կարգը։ Այսուհետև կոլտնտեսությունները եկամտահարկ են վճարելու զուտ եկամըտից, ելնելով շահութաբերության մակարդակից՝ տարբերակված դրույքներով։ Այսպես, 25—30 տոկոս շահութաբերություն ունեցող կոլտնտեսություններն իրենց զուտ եկամտից հարկ են վճարելու շահութաբերության յուրաքանչյուր տոկոսի համար 0,1 տոկոս, 30—40 տոկոսի դեպքում՝ համապատասխանաբար՝ 0,2, 40—50 տոկոսի՝ 0,4, 50 տոկոսից բարձր շահութաբերության դեպքում՝ 0,5 տոկոս, բայց զուտ եկամտի 25 տոկոսից ոչ ավելի։ Նոր կարգը թեթևացնում է վնասով աշխատող ու ցածր շահութաբեր կոլտնտեսությունների վիճակը։ Երկրի մասշտաբով նրանք շահում են տարեկան մոտ 100 մլն ռուբլի, որը մնում է նրանց տրամադրության տակ՝ արտադրության ընդլայնման նպատակով։

Փոխվում է վճարումների կարգը նաև սովխոզներում։ Մինչ այժմ 25 տոկոսից բարձր շահութաբեր սովխոզներն իրենց հիմնական ֆոնդերից մեկ տոկոսի չափով ֆոնդավճար էին կատարում, որն աննշան գումար կազմելու պատճառով էական նշանակություն չուներ հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու հարցում։ Այդ կապակցությամբ սովխոզները կհարկվեն կոլտնտեսությունների նման՝ այսինքն՝ ըստ զուտ եկամտի, շահութաբերության մակարդակի և տարբերակված դրույքների։

Կուսակցությունը հատուկ ուշադրություն է նվիրում գյուղի աշխատավորության սոցիալ-կուլտուրական պայմանների բարելավմանը։ Գյուղում իրականացվում է բարեկարգման, կոմունալ-բնակարանային շինարարության, սոցիալ-կուլտուրական միջոցառումների լայն ծրագիր։

Միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին իրավունք է վերապահված, ժողտնտպլանով նախատեսվածից բացի, իրենց հանրապետությունների արտադրական նպատակի կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի մինչև 10 տոկոսը նույնպես տրամադրել տնտեսապես թույլ և ցածր շահութաբեր տնտեսություններում բնակարանային ու կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցմանը։ Թույլատրված է այս տարվանից գյուղատնտեսության պետական կապիտալ ներդրումների հաշվին իրականացնել ցածր շահութաբեր տնտեսությունների ջրմուղի և ջրամատակարարման ցանցի կառուցում։ Դա հնարավորություն կընձեռի վերոհիշյալ նպատակների համար սեփական միջոցներ չունեցող տնտեսություններում աշխատող կոլտնտեսականների ու բանվոր-ծառայողների համար նույնպես բավարար պայմաններ ստեղծել կադրերն ամրապնդելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և տնտեսությունների արդյունավետ գործունեությունն ապահովելու համար։

Վնասով աշխատող և ցածր շահութաբեր տնտեսություններին խոշոր օգնություն է պետբյուջեի հաշվին նրանց առանձին միջոցառումների ֆինանսավորումը։ Բնակարանային ու ջրամատակարարման հատկացումներից բացի, բյուջեից են տրվելու նաև միջտնտեսային ճանապարհների, նախադպրոցական հաստատությունների կառուցման ու պահպանման ծախսերը, ինչպես նաև պետական ապահովագրության միջոցները, որոնց գումարը տարեկան կազմելու է 3,3 մլրդ ռուբլի։ Ընդ որում չիրացված գումարները հետգանձման ենթակա չեն և թողնվում են նրանց տրամադրության տակ՝ գալիք տարիներին նույն նպատակներով օգտագործելու համար։



Այժմ խիստ հրատապ է կոլտնտեսություններն ու սովխոզները բարձրորակ մասնագետ կադրերով ապահովելու, ղեկավարների ու մասնագետների հեղինակությունը բարձրացնելու, աշխատանքների ձևերն ու մեթոդները կատարելագործելու խնդիրը։ Խրախուսվում է պետական կառավարման ոլորտից գյուղատնտեսական արտադրություն մեկնելու նախաձեռնությունը։ Այդ կապակցությամբ կոլտնտեսության ու սովխոզի ղեկավար աշխատանքի մեկնողների աշխատավարձը (եթե այն նոր տեղում նախկինից ցածր է) պահպանվում է 4 տարի, իսկ ցածր շահավետ ու թույլ տնտեսություններ մեկնողներինը՝ 5 տարի։ Մեկնողներին միանվագ տրվում է երեք ամսվա աշխատավարձ, իսկ ընտանիքավորներին՝ հինգ ամսվա։ Ղեկավար կադրերի հոսունությունը դադարեցնելու և նյութական պայմանները բարելավելու նպատակով ըստ ստաժի սահմանված է աշխատավարձի դրույքի մինչև 30 տոկոսի հավելավճար։

Մեծ հոգատարություն է ցուցաբերվում կոլտնտեսություն ու սովխոզ մեկնող երիտասարդ մասնագետների նկատմամբ։ Բուհեր ավարտող ու գյուղ մեկնող մասնագետներին հատկացվում է բնակարան, որի կոմունալ ծախսերը տնտեսությունը վերցնում է իր վրա։ Եթե տնտեսությունը չունի ազատ բնակֆոնդ, ապա թույլատրված է քաղաքացիներից վարձել բնակարան և տրամադրել նրանց։ Սովխոզներում երիտասարդ կադրերին, բանակից զորացրվածներին, մեխանիզատորներին միանվագ տրվում է 6 ամսվա աշխատավարձ. երաշխավորված է այդ կարգը կիրառել նաև կոլտնտեսություններում։

Անասնապահության բնագավառի կադրերի ամրապնդման նպատակով որոշված է նրանց վրա տարածել մեխանիզատորների նկատմամբ կիրառվող պայմանները։ Անասնապահների համար սահմանված է նաև տարեկան 6 օր լրացուցիչ արձակուրդ։

Պարենային ծրագիրն ուղղված է բնակչությանը պարենով և արդյունաբերությունը գյուղատնտեսական հումքով լրիվ ու անխափան մատակարարումն ապահովելուն։ Նշված միջոցառումների իրականացումը պահանջում է նյութական ու ֆինանսական խոշոր ռեսուրսներ։ Այդ ռեսուրսների մասշտաբը պատկերացնելու համար համեմատենք 1965, 1978 և 1982 թթ. ցուցանիշները (մլրդ ռուբլիներով).

| | 1982 թ. | | 1978 թ. | | 1965 թ. | |
|---|---|---|---|---|---|---|
| | ՍՍՀՄ (մլրդ ռուբլի) | ՀՍՍՀ (մլն ռուբլի) | ՍՍՀՄ (մլրդ ռուբլի) | ՀՍՍՀ (մլն ռուբլի) | ՍՍՀՄ (մլրդ ռուբլի) | ՀՍՍՀ (մլն ռուբլի) |
| Կոլտնտեսությունների ու սովխոզների լրացուցիչ եկամուտները գնման գների բարձրացումից և վարկերի պարտքերի դուրս գրումից | 5,94 | 56,0 | 11,6 | 94,0 | 31,3 | 255,0 |
| Պետբանկի վարկերի հետաձգումից | 2,0 | — | 4,0 | 10,2 | 11,1 | 39,0 |
| Կոլտնտեսություններից գանձվող եկամտահարկի հաշվարկման կարգը փոխելուց | 0,5 | 19,2 | 0,3 | 7,0 | 0,1 | 0,9 |

Գյուղատնտեսության զարգացման համար այդպիսի պայմանների ստեղծումը պահանջում է համապատասխան միջոցներ ձեռնարկել շրջանային ագրոարդյունաբերական միավորումների, մինիստրությունների ու գերատեսչությունների, գյուղատնտեսական արտադրության կառավարման բոլոր օղակների, կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրության կառավարման մակարդակը բարձրացնելու համար։ Անհրաժեշտ է հետևողական աշխատանք տանել հողի, տեխնիկայի, պարարտանյութերի, կերի, վառելիքի, քսանյութերի և արտադրական ու ֆինանսական այլ ռեսուրսներն ու արտադրական ողջ պոտենցիալը լիարժեք օգտագործելու, ամեն մի տնտեսության արդյունավետ գործունեությունն ապահովելու համար։ Իսկ դրա ուղին ամենագործուն պայքարն է աշխատանքի բոլոր բնագավառներում խնայողության ռեժիմը կիրառելու համար, տնտեսվարության, վատնումների, յուրացումների ու սոցիալիստական հասարակարգին խորթ մյուս երևույթների դեմ, գործնական միջոցների իրականացումը հանրային ամեն մի ռուբլու արդյունավետ օգտագործումն ապահովելու համար։

Գյուղատնտեսական մթերքների գնման գների բարձրացումը, կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի զարգացման և մյուս միջոցառումներն ավելի քան 7 մլրդ ռուբլով ավելացնում են բնակչության դրամական եկամուտները։ Դա իր հերթին նոր պահանջներ է առաջադրում արդյունաբերության և առևտրի աշխատողներին՝ բնակչությանն ավելի շատ որակյալ ապրանքներ մատակարարելու համար։

Կուսակցությունը պարենային ծրագիրը հայտարարել է համաժողովրդական գործ։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի նոյեմբերյան (1982 թ.) պլենումը պահանջեց մեր պլաններում կենտրոնական տեղ հատկացնել այդ ծրագրի իրականացման հետ կապված միջոցառումներին։ Հետևաբար դրա կատարումը բոլոր կոլեկտիվների, երկրի բոլոր քաղաքացիների պարտքի ու պատվի գործն է։ Այն պահանջում է պետական, աշխատանքային ու ֆինանսական ամուր կարգապահություն, հանձնարարված գործի նկատմամբ յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվության բարձր զգացում։

---



# ԿՅԱՆՔԻ ԾԱԳՄԱՆ ԱԿՈՒՆՔՆԵՐԻ ՄՈՏ

ՏԱՂԱՆԴԱՎՈՐ ԳԻՏՆԱԿԱՆ, անձնվեր կոմունիստ, բոլորանվեր հայրենասեր Նորայր Մարտիրոսի Սիսակյանը ծնվել է 1907 թ. հունվարին Աշտարակում, գինեգործ գյուղացու ընտանիքում։ Տնտեսական ծանր պայմաններում մեծ դժվարությունների գնով նա ավարտում է միջնակարգը և մեկ տարի դասավանդում գյուղական երիտասարդության դպրոցում։ Շնորհիվ իր արտակարգ ընդունակությունների, 1928 թվականին Սիսակյանն ընդունվում է Երևանի պետական համալսարանը, որտեղից և գործուղվում է Մոսկվայի Տիմիրյազևի անվան գյուղատնտեսական ակադեմիա։



Ակադեմիան հաջողությամբ ավարտելուց հետո (1932 թ.) նա աշխատանքի է անցնում հայտնի գիտնական Դ. Ն. Պրյանիշնիկովի մոտ։ 1935 թ. Սիսակյանը ՍՍՀՄ ԳԱ նորաստեղծ կենսաքիմիայի ինստիտուտի ասպիրանտն է։ Այստեղ ակադեմիկոսներ Ա. Ն. Բախի և Ա. Ի. Օպարինի ղեկավարությամբ Նորայր Մարտիրոսովիչը հաջողությամբ ավարտում է թեկնածուական դիսերտացիան, որն արժանանում է բարձր գնահատականի։

1936 թվականից Սիսակյանն սկսում է հետազոտել մի շատ կարևոր բնագավառ՝ բույսերի երաշտադիմացկունության կենսաքիմիական հիմունքները։ Մինչ այդ գրականության մեջ համեմատաբար լավ էր լուսաբանվել այդ երևույթի միայն ֆիզիոլոգոանատոմիական բնույթը, իսկ ինչ վերաբերում է բիոքիմիական պրոցեսներին, դրանք կարոտ էին հետազոտման։ Նորայր Սիսակյանն այդ գիտական աշխատանքը կատարեց փայլուն կերպով։ Հետագայում իր հետազոտությունները շարունակեց մինչև 1940 թվականը և հասավ էական արդյունքների։ Ամփոփելով այդ բազմամյա արժեքավոր հետազոտությունները՝ 1940 թվականին նա փայլուն կերպով պաշտպանում է դոկտորական դիսերտացիան։ Այնուհետև ավելի քան 30 տարի խորանում է իր սիրած գիտության գաղտնարանները, արժանանում համընդհանուր ճանաչման ինչպես Սովետական Միությունում, նույնպես և արտասահմանյան մի շարք երկրներում։

Այդ տարիներին Սիսակյանը հանգամանալի ուսումնասիրեց բիոքիմիական պրոցեսների ռիթմը, գտավ, որ օրգանիզմների էնզիմատիկ ակտիվությունը փոփոխությունների է ենթարկվում, այդ փոփոխականությունը պարբերական բնույթ ունի, և ֆերմենտների գործունեության ռիթմային տատանումները պայմանավորված են օրգանիզմի ֆիզիոլոգիական վիճակով ու արտաքին ներգործությունների բնույթի փոփոխությամբ։ Եվ գիտնականը եզրակացրեց. բույսերի նորմալ բերքատվության համար հույժ կարևոր դեր ունի ֆերմենտների ռիթմիկ ակտիվությունը։ Ակադեմիկոս Ա. Ն. Բախի աշխատությունը մարդու և կենդանիների արյան մեջ ֆերմենտների գործունեության օրական ռիթմի մասին էր, իսկ Նորայր Մարտիրոսովիչն առաջինը ցույց տվեց, որ բուսական կենդանի բջջում գոյություն ունի ֆերմենտների սեզոնային և տարիքային ռիթմ։

1942—1966 թվականներին ավելի բեղմնավոր է դառնում նրա գիտական ու հասարակական գործունեությունը։ Նա մեծ լիցք է ստանում, երբ նրան է վստահվում Բախի անվան բիոքիմիայի լաբորատորիան։

Զարմանալիորեն արագ է ծավալվում Նորայր Սիսակյանի գիտական ու հասարակական լարված գործունեությունը: 1937 թ. նա ընդունվում է կոմունիստական կուսակցության շարքերը. 1939—1942 թթ. ընտրվում ՍՍՀՄ ԳԱ բիոքիմիայի ինստիտուտի գիտնական-քարտուղար, 1944 թ. բարձրագույն ատեստացիոն հանձնաժողովը նրան շնորհում է պրոֆեսորի կոչում: ՍՍՀՄ ԳԱ 220-ամյակի առիթով գիտության զարգացման գործին մատուցած նշանակալի ծառայությունների համար նա պարգևատրվում է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

Սիսակյանը մեծ կարևորություն էր տալիս տեսական ուսումնասիրությունների և կենսական պրակտիկ խնդիրների կապին: Ահա ինչու տարիներ շարունակ նրան հուզում էին տեխնիկական բիոքիմիայի հարցերը: Հայրենական պատերազմի տարիներին նա զբաղված էր բանջարեղենի ու կարտոֆիլի վիտամինային չորացման պրոբլեմների լուծմամբ: Սովետական վիտամինագիտության բնագավառում իր բացառիկ ծառայությունների և սովետական բանակը վիտամիններով ապահովելու առաջադրանքը գերազանց կատարելու համար 1944 թ. հայրենասեր գիտնականը պարգևատրվեց «Պատվո նշան» շքանշանով:

1945 թ. Ն. Սիսակյանն ընտրվում է Հայաստանի գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ, ութ տարի անց՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ: 1959—1963 թթ. նա ՍՍՀՄ ԳԱ կենսաբանական գիտությունների բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղարն էր: 1960 թ. ընտրվում է ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս, իսկ 1965 թ. նաև Հայաստանի գիտությունների ակադեմիայի իսկական անդամ:

Ավելի քան 15 տարի մեծ կենսաբանը նվիրվել է պլաստիդների, հատկապես քլորոպլաստների քիմիական բաղադրության ուսումնասիրությանը: Գիտության շատ կարևոր մի ոլորտ է այդ, քանի որ պլաստիդները՝ այդ օրգանոիդները, կապված են ֆոտոսինթեզի հետ և դրանց անմիջական մասնակցությամբ է տեղի ունենում օրգանական նյութի նախնական կազմավորումը: Համակողմանի ուսումնասիրելով ֆերմենտների կապը պլաստիդների հետ՝ նա հայտնաբերեց պլաստիդներում շատ ու շատ ֆերմենտներ: Նա առաջինը քլորոպլաստների մեջ հայտնաբերեց կենսարար յոթ ֆերմենտներ (պերօքսիդազա, պոլիֆենոլօքսիդազա, ցիտոքրոմօքսիդազա, ֆոսֆորիլազա, ֆոսֆոգլյուկոմուտազա, պրոտեազա և դեզիդրազա):

Տարբեր ֆերմենտների առկայությունը պլաստիդներում վկայում է այդ կարևոր բջջային օրգանոիդներում շատ ֆունկցիաների լոկալիզացիայի մասին: «Պրոտոպլազմային կառուցվածքների ֆերմենտատիվ ակտիվությունը» աշխատության համար 1952 թ. նրան շնորհվում է ՍՍՀՄ պետական մրցանակ: Երկու տարի անց նա պարգևատրվում է Աշխատանքային կարմիր դրոշի երկրորդ շքանշանով:

Պլաստիդների ֆերմենտատիվ ակտիվության հետազոտությանը հետևում է պլաստիդների բիոքիմիայի խոր ուսումնասիրությունը: Այս առումով հույժ կարևոր են պլաստիդների նուկլեինաթթուներին վերաբերող աշխատանքները: Ուսումնասիրվում էր ռիբոնուկլեինաթթվի (ՌՆԹ) պարունակությունը շաքարի ճակնդեղի, սպանախի, արևածաղկի տերևներում, շաքարի ճակնդեղի, գազարի արմատներում: Պարզվում է, որ մատղաշ տերևները 2—3 անգամ ավելի շատ ՌՆԹ են պարունակում, քան ծեր տերևները: Համեմատելով ՌՆԹ-ի և սպիտակուցի քանակական փոփոխությունները քլորոպլաստներում, Սիսակյանը հանգեց այն եզրակացության, որ հնարավոր է սպիտակուցի սինթեզը այդ բջջային օրգանոիդներում: Հետագայում և՛ իր, և՛ այլոց լաբորատորիաներում կատարված փորձերը հաստատեցին նրա այդ հայտնագործությունը: 1958 թ. «Պլաստիդների քիմիական բնույթը և բիոքիմիական ֆունկցիաները» աշխատությունը պսակվում է ՍՍՀՄ ԳԱ մրցանակով:

Հետաքրքրական ու կարևոր են տաղանդավոր գիտնականի աշխատությունները՝ նվիրված բույսերի նյութափոխանակության վրա ճառագայթման ազդեցության ուսումնասիրությանը: Նրա լաբորատորիայում սպիտակուցների և նուկլեինաթթուների ուսումնասիրությունները ապացուցեցին, որ ճառագայթման ազդեցությամբ խախտվում է նյութափոխանակման պրոցեսների փոխադարձ կապը: Նորայր Սիսակյանը գտավ, որ մեկուսացված ֆերմենտների համեմատությամբ առավել ճառագայթազգայուն են բջջային կառուցվածք ունեցողները: Նա գտնում է, որ կենդանի բնության մեջ նյութափոխանակությունը փոխադարձ կապի և փոխպայմանավորվածության ընդհանուր ձև է, ուստի և ճառագայթահարման ազդեցությամբ որևէ ֆերմենտի կամ ֆերմենտների սիստեմի ակտիվության կորուստը հանգեցնում է նյութափոխանակության խախտման՝ ողջ օրգանիզմում: Այս ուսումնասիրությունների մասին նա հանգամանորեն հաղորդեց 1955 թվականին Ժնևում կայացած կոնֆերանսում, որը նվիրված էր ատոմային էներգիայի խաղաղ օգտագործմանը:

Մեծ է կենսաքիմիկոսի վաստակը նաև



հայրենական գինեգործության, կոնյակի և շամպայնի արտադրության գիտական հիմունքների մշակման գործում: Խաղողի սորտերի ֆիզիոլոգիական-բիոքիմիական առանձնահատկություններին նվիրված ուսումնասիրություններում նա ցույց է տվել, որ գինու որակն ու տեսակը պայմանավորված են ո՛չ միայն նախնական տեխնոլոգիայի բիոքիմիական պրոցեսների ինտենսիվությամբ, այլև խաղողի սորտային առանձնահատկություններով, խնամքով:

Սիսակյանի անմիջական մասնակցությամբ և խմբագրությամբ լույս են տեսել հոդվածների յոթ ժողովածուներ՝ **Գինեգործության բիոքիմիան** վերնագրով, ուր ամփոփված են ինչպես իր, նույնպես և այլոց լաբորատորիաներում կատարված հետազոտությունները ու փորձերը:

Նորայր Մարտիրոսովիչը 1949—1959 թթ. բացառիկ լարված աշխատանք է կատարում ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայում որպես նախագահության գիտնական-քարտուղար: Միութենական ակադեմիայի ղեկավարությունը միշտ էլ բարձր է գնահատել նրա երկարամյա անձնվեր գործունեությունը: Լինելով լայն մտահորիզոնի տեր առաջնակարգ գիտնական՝ Սիսակյանը միաժամանակ աչքի էր ընկնում որպես տաղանդավոր մանկավարժ-դասախոս: Գիտահետազոտական բեղմնավոր գործունեությունը նա զարմանալի հմտությամբ զուգակցում էր մանկավարժական և գիտակազմակերպչական աշխատանքի հետ: 1956—1966 թթ. Մոսկվայի պետական համալսարանում նա կարդում էր իր մշակած «Պրոտոպլազմային կառուցվածքների ֆունկցիոնալ բիոքիմիա» դասընթացը, երկար տարիներ բիոքիմիայի հատուկ դասընթաց (էնզիմոլոգիա) է կարդացել նաև Երևանի պետական համալսարանում և արտասահմանյան շատ երկրներում (Բելգիա, Ֆրանսիա, Ճապոնիա...):

Սիսակյանն այն մեծ գիտնականներից է, որոնք ստեղծում, սկզբնավորում են խոշոր, կենսունակ գիտական դպրոցներ, դաստիարակում հզոր ժառանգներ և դրանով իսկ անմահանում: Նրա ղեկավարությամբ թեկնածուական և դոկտորական դիսերտացիա են պաշտպանել մի քանի տասնյակ մարդիկ:

Շատ մեծ են Սիսակյանի գիտակազմակերպչական ծառայությունները, որում ևս նա ցուցաբերում է բացառիկ ձիրք: 1954 թ. Նորայր Մարտիրոսովիչը մասնակցում է Ֆրանսիայում հրավիրված VIII միջազգային բուսաբանական կոնգրեսին, մեկ տարի անց՝ Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում կայացած կուլտուրական բույսերի բիոքիմիային նվիրված գիտաժողովին, ապա միջազգային III բիոքիմիական կոնգրեսին (Բելգիայում): 1956 թ. որպես Սովետական Միության պատգամավոր նա մասնակցում է թագավորական ընկերության տարեկան համաժողովին՝ Անգլիայում. երկու տարի անց մասնակցում է Ավստրիայում կազմակերպված միջազգային IV բիոքիմիական կոնգրեսին: Նույն թվականին գործուղվում է Փարիզ՝ մասնակցելու ՅՈՒՆԵՍԿՕ-ի X գլխավոր կոնֆերանսին: 1956—1959 թթ., շուրջ չորս տարի, նա ընտրվում է ՅՈՒՆԵՍԿՕ-ի կոնսուլտատիվ կոմիտեի անդամ՝ բնական գիտությունների գծով, ապա մինչև 1964 թվականը՝ ՅՈՒՆԵՍԿՕ-ի գործադիր խորհրդի անդամ: Նա ակտիվ մասնակցում է ՅՈՒՆԵՍԿՕ-ի XI XII կոնֆերանսներին, XIII նստաշրջանին, ուր ընտրվում է սեսիայի նախագահ:

Կառավարությունը բարձր է գնահատում Սիսակյանի հայրենանվեր գիտական գործունեությունը: Նա պարգևատրվում է Սովետական Միության ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի արծաթե, ապա ոսկե մեծ մեդալներով: 1960 թվականին Նորայր Սիսակյանը գործուղվում է Ամերիկայի Միացյալ Նահանգներ՝ մասնակցելու VII և VIII Պագուոշյան կոնֆերանսներին:

1963 թվականից մինչև կյանքի վերջը նա եղել է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահության անդամ և գլխավոր գիտնական-քարտուղար: Համատեղության կարգով՝ բարձրագույն ատեստացիոն հանձնաժողովի նախագահի տեղակալ, ինչպես և՝ ՍՍՀՄ ԳԱ խմբագրական-հրատարակչական խորհրդի նախագահ:

Բջջային կառուցվածքների բիոքիմիային և տիեզերական կենսաբանությանը նվիրված մի շարք աշխատությունների համար 1966 թվականին Նորայր Մարտիրոսովիչին շնորհվել է Ա. Ն. Բախի անվան մրցանակ:

Նորայր Սիսակյանն իր աշխատանքների մասին զեկուցել է միջազգային բուսաբանական VIII կոնգրեսում (Փարիզ, 1955), III (Բրյուսել, 1955), IV (Վիեննա, 1958), V (Մոսկվա, 1961), VI (Նյու-Յորք, 1964) բիոքիմիական միջազգային կոնգրեսներում, քիմիական ֆերմենտներին նվիրված միջազգային կոնգրեսում (Տոկիո, 1957):

Սիսակյանը խոշոր ավանդ է ներդրել կենսաբանության նոր ճյուղի՝ տիեզերական կենսաբանության զարգացման բնագավառում: Մեծ հումանիստը գտնում էր, որ տիեզերագիտության զարգացումը, մարդու կողմից տիեզերական տարածքների նվաճումը պետք է խարսխվեն հիմնարար գիտությունների, այդ թվում և կյանքի մասին գիտության նվաճումների վրա: Համընդհանուր կենսաբանական

մոտեցում տիեզերական բիոքիմիայի խնդիրների լուծման գործում. պահանջում էր նա և պնդում, որ այս ասպարեզում անհրաժեշտ է օգտագործել հայրենական և արտասահմանյան կենսաբանության առաջավոր գաղափարները: Նրա նախաձեռնությամբ գիտությունների ակադեմիայի տարբեր գիտական հաստատություններում ստեղծվեցին տիեզերական կենսաբանության բազմաթիվ լաբորատորիաներ:

Բարձր գնահատվեց ակադեմիկոս Ն. Մ. Սիսակյանի ծառայությունը տիեզերական կենսաբանության բնագավառում. նա ընտրվեց միջազգային տիեզերագնացության ակադեմիայի փոխպրեզիդենտ (1965 թ.), միջազգային տիեզերագնացության ֆեդերացիայի կենսատիեզերագնացության կոմիտեի նախագահ:

Հույժ հետաքրքրական են Նորայր Մարտիրոսովիչի հոդվածները ու ելույթները՝ նվիրված բիոքիմիայի հարցերին: Իր տեսական ընդհանրացումներում նա ելնում է այն սկզբունքից, որ օրգանիզմը և միջավայրը մի միասնություն են: Այդ ընդհանուր կենսաբանական սկզբունքը լայն ճանաչում գտավ նաև բիոքիմիայում:

Սովետական խոշոր կենսաբան, ակադեմիկոս Ա. Ն. Բելոզերսկին այսպես է բնութագրել մեծ գիտնականին. «Նորայր Մարտիրոսովիչը հիրավի համարվում է մեր երկրի խոշորագույն բիոքիմիկոսներից մեկը: Լինելով բացառիկ ակտիվ հետազոտող, նա կատարեց շատ կարևոր ներդրում բիոքիմիայի՝ գիտության այդ կարևոր բնագավառում: Միաժամանակ նա հայրենական գիտության տաղանդավոր կազմակերպիչ է և այն արժանավայել կերպով է ներկայացնում արտասահմանում»:

Արտասահմանում լայն ճանաչման էր արժանացել ակադեմիկոս Ն. Սիսակյանը: Նրա մահից հետո գրվեցին շատ մահախոսականներ, որոնցում ՅՈՒՆԵՍԿՕ-ում նրա հետ երկար ժամանակ աշխատած գիտնականները ըստ արժանվույն գնահատեցին Սիսակյանի տաղանդն ու գիտելիքները: ՅՈՒՆԵՍԿՕ-ի XIII կոնֆերանսի կուբայական պատվիրակության ղեկավար Խուան Մարինելյոն Սիսակյանին համարում է քաղաքացիական բարձր գիտակցության տեր մարդ՝ նոր ժամանակների մարդու խորհրդանիշ: Նա աչքի էր զարնում մարդկանց նկատմամբ ունեցած իր ջերմ վերաբերմունքով, գիտական հարցերը քննարկելիս անմիջական էր, բայց իմաստունի խոհեմ անմիջականություն էր այդ: Նրան առաջին անգամ տեսնողի մտքով իսկ չէր անցնի, որ առանց նրա համաձայնության սովետական ոչ մի տիեզերագնաց չէր կարող թռչել տիեզերք:

Սիսակյանը փայլուն հռետոր էր, առինքնել գիտեր լսարանը, որտեղ էլ որ լիներ՝ մեր երկրում, թե այլուր: Որպես ՅՈՒՆԵՍԿՕ-ի XIII գլխավոր կոնֆերանսի պրեզիդենտ, մեծ գիտնականը ցուցաբերեց անդրդվելի կամք և տակտ, որոնք օգնեցին լուծելու անլուծելի թվացող շատ հարցեր: Ինչ խնդրի էլ նվիրված լինեին Սիսակյանի դասախոսությունները ՅՈՒՆԵՍԿՕ-ի կոնֆերանսներում— տիեզերագնացի տիեզերանավից մթնոլորտ դուրս գալուն, ժամանակակից պայմաններում գիտության զարգացման դերին, թե երկրի բնական հարստությունները ուսումնասիրելու և մարդու կենսական պահանջներին ծառայեցնելու խնդիրներին— տարակազմ լսարանը նրան լսում էր համակ ուշադրությամբ ու հիացմունքով: Մեծ արվեստով, խորագիտակցությամբ նա ներկայացնում էր սովետական գիտության հասումները, միաժամանակ շեշտելով, որ սոցիալական նոր պայմաններում գիտությունը հասարակության համընդհանուր առաջընթացին ծառայող հզոր ուժ է: Նա գտնում էր, որ յուրաքանչյուր երկրում ազգային պլանով տարվող գիտական հետազոտությունները պետք է դառնան համաշխարհային հասարակության սեփականությունը, որպեսզի գիտական հետազոտությունները և դրանց գործնական կիրառությունը դառնան խաղաղության գործի զորավոր խթանը ողջ աշխարհում:

Ակադեմիկոս Սիսակյանը միջազգային ամբիոններից մեկնաբանում էր խաղաղ գոյակցության սովետական սկզբունքը, մեր մոլորակի, ողջ մարդկության պահպանության համար ամենակարևոր խնդրի՝ խաղաղության ապահովման հույժ անհրաժեշտությունը: Այդ առնչությամբ հետաքրքրական էր ՅՈՒՆԵՍԿՕ-ի գործադիր խորհրդի 64-րդ նիստը, ուր երկարատև ու սուր վիճաբանություն ծագեց ակադեմիկոս Սիսակյանի և ԱՄՆ-ի այն ժամանակվա պրեզիդենտ Ջոնսոնի մտերիմ, ՅՈՒՆԵՍԿՕ-ում ԱՄՆ-ի ներկայացուցիչ սենատոր Բենտոնի միջև. այդ օրերին վերջինս գնել էր բրիտանական հայտնի հանրագիտարանը: Բենտոնն իր ելույթում «խաղաղ գոյակցություն» արտահայտությունը համարեց քայքայիչ ձևակերպում, որը հնարել է Սովետական Միությունը՝ չարանենգ նպատակներով: Սիսակյանը փայլուն կերպով ավարտեց իր խոսքը, հայտարարելով, թե ինքը «խաղաղ գոյակցության» էության բացատրությանն անդրադառնում է հանգամանորեն, «որպեսզի Բրիտանական հանրագիտարանի հաջորդ հրատարակությունը՝ Բենտոնի խմբագրությամբ, սխալ թույլ չտա»:

Ահա թե ինչ է ասել Ն. Սիսակյանը 1959 թ. կայացած Պագուոշյան IV կոնֆերանսում «Համաշխարհային անվտանգությունը և զինաթափման պրոբլեմը» թեմայով իր զեկուցման մեջ. «Ես համոզված եմ, որ անցել է միջուկային պատերազմի վտանգի և դրա դեմ պայքարելու անհրաժեշտության մասին ընդհանուր բնույթի հանդիսավոր հայտարարությունների ժամանակը, չնայած որոշակի պատմական ժամանակահատվածում այն խաղացել է իր դրական դերը: Այժմ մեզնից՝ գիտնականներից, ժողովուրդները սպասում են ոչ թե նույնիսկ ամենալավ բովանդակությունն ունեցող հայտարարություններ, այլ կոնկրետ գործողություններ, հատկապես այնպիսի մեթոդների մատնանշմամբ, որոնց օգնությամբ հնարավոր լինի թուլացնել ատոմային վտանգը և ճանապարհ հարթել դեպի դրա վերջնական վերացումը»:

Մարդկության, երկիր մոլորակի գոյատևման համար ծավալված պայքարի անխոնջ մարտիկը խաղաղության կողմնակիցների միջազգային շարժման տասնամյակի առնչությամբ 1959 թ. պարգևատրվեց պատվոգրով և արծաթե մեդալով: Պայքարելով խաղաղ գոյակցության համար և մերկացնելով դրա հակառակորդներին՝ խորատես գիտնականը, որպես հմուտ քաղաքագետ, կատարում էր սովետական մարդու՝ նոր մարդու իր պարտքը: Գիտությունը նրա համար ազատության, խաղաղության պաշտպանության զենքն էր:

«Սիսակյանի համար,— ասել է ՅՈՒՆԵՍԿՕ-ի այն ժամանակվա գլխավոր դիրեկտոր Ռենե Մայոն,— գիտական գիտակցությունը հանդիսանում էր մարդու մեջ ամենաճշմարիտ և մաքուր սկիզբը»: Իրոք, այդ անառարկելի մաքրությունն ու ճշմարտասիրությունը Սիսակյանի մոտ հասան իրենց գագաթնակետին՝ շնորհիվ այն բանի, որ դեպի ճշմարտություն և հավասարություն տանող նրա ուղին ողողված էր այնպիսի լույսով, որը գիտելիքը վերածում էր ազատագրող ուժի:

Հռչակավոր գիտնականը, **Սովետական հանրագիտարանի** պետական գիտական հրատարակության գիտական խորհրդի անդամը անդուլ հոգում էր նաև գիտական ամսագրերի պատշաճ հրատարակման, դրանց հարուստ ու խոր գիտական մակարդակի ապահովման համար: Նա գլխավոր խմբագրի տեղակալն էր «Բիոքիմիա» և «Տիեզերական հետազոտություններ» ամսագրերի, գլխավոր խմբագիրը «Բանքեր ՍՍՀՄ Գ.Ա.» և «ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի տեղեկագրի կենսաբանական սերիա» ամսագրերի, «Համեմատական ֆիզիոլոգիա և բիոքիմիա» (Անգլիա) և «Ագրոքիմիա» (Իտալիա) ամսագրերի խմբագրական կոլեգիաների անդամը:

Իր ողջ կյանքը Նորայր Սիսակյանն անձնվիրությամբ ի սպաս դրեց գիտությանը: Իր աշխատասենյակում նա չէր նկատում ո՛չ ժամանակ, ո՛չ հոգնություն, ո՛չ տկարություն: Նա բառացիորեն աշխատեց մինչև իր կյանքի վերջին րոպեն և մահացավ աշխատասեղանի առաջ, լաբորատորիայում, երբ մտածում էր նոր փորձնական պրպտումներից դեպի իրեն հետաքրքրող գիտական հարցերը տանող ուղիների մասին: Ստեղծարար սխրանքներով, բազում ու բազմազան զբաղմունքներով լի 59 տարիներ, որոնց երկրորդ կեսի ընթացքում նրա բեղմնավոր մտքի ու գրչի արտադրանքը ներկայացնող աշխատությունների, հոդվածների, զեկուցումների մատենագիտությունը պարունակում է ավելի քան 570 անուն...

Գիտական ողջ հասարակայնությունը, սովետական ժողովուրդը միշտ վառ են պահում գիտության մեծ երախտավորի բնավ չխամրող հիշատակը: Նրա ծննդավայրում՝ Աշտարակում, հայրենակիցները հուշարձան են կանգնեցրել սովետական ականավոր կենսաբանին, նրա անունով է կոչվում Աշտարակի միջնակարգ դպրոցներից մեկը, որտեղ այցելուն կարող է ցուցադրված բազմաթիվ ստենդների միջոցով ծանոթանալ անվանի հայրենակցի կյանքին ու գիտական գործունեությանը: Տաղանդավոր գիտնականի, մեծ քաղաքացու և մտածողի անձեռակերտ հուշարձանը նրա երկարամյա բազմաբեղուն գիտական գործունեության արդյունքն է, որ թողեց նա գալիք սերունդներին:

**Ս. Կ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
**ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս**

# ՖԻԶԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԴԵՐԸ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԿԵՐՊԱՎՈՐՄԱՆ ՊՐՈՑԵՍՈՒՄ

**Ռ. Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**

ԵՐԻՏԱՍԱՐԴ ՍԵՐՆԴԻ ձևավորումը տեղի է ունենում ինչպես ուսման, այնպես էլ աշխատանքային գործունեության ընթացքում:

Կոմունիստական դաստիարակության բաղկացուցիչ մասերից մեկը՝ ֆիզիկական դաստիարակությունը, նպաստում է սովորողների, աշխատավոր երիտասարդության համակողմանի և ներդաշնակ զարգացմանը, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի համար բարձրորակ մասնագետների պատրաստմանը:

Կուսակցության XXVI համագումարում նշվեց. «Մարդկանց առողջության նկատմամբ հոգատարությունն անբաժանելի է **ֆիզիկական կուլտուրայի և սպորտի** զարգացումից: Մոսկովյան օլիմպիադան ակնբախորեն ցույց տվեց սովետական մարզիկների հիանալի նվաճումները: Սակայն մեզ միշտ հետաքրքրել են ոչ միայն մարզական բարձրագույն նվաճումները, այլ նաև և առաջ ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայականությունը: Այդ գործում հաջողությունները ակնբախ են: Բայց, այնուհանդերձ, մարդկանց մեծամասնության համար սպորտը դեռևս մնում է սոսկ հանդիսախաղ: Նման վիճակը պետք է շտկել: Ֆիզիկական կուլտուրան պետք է մտնի բնակչության լայն խավերի և հատկապես երեխաների առօրյա կյանքի մեջ» (**ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը**, էջ 100):

Դեռևս 1925 թ. հուլիսի 3-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի ընդունած «Կուսակցության խնդիրները ֆիզիկական կուլտուրայի բնագավառում» որոշումն իրոք վկայում է, որ մեր երկրի զարգացման առաջին տարիներից իսկ կուսակցության ղեկավարությամբ են ընթացել սովետական երկրի ֆիզիկական կուլտուրայի շարժումն ու զարգացումը:

Կոմունիստական կուսակցությունը, սովետական պետությունը միջոցներ չեն խնայում, որպեսզի երիտասարդությունը լինի ոչ միայն համակողմանիորեն կրթված ու հոգեպես գեղեցիկ, այլև առողջ, կոփված, ֆիզիկապես ամուր: Գլխավորը սպորտային շարժման մասսայականությունն է, ողջ երիտասարդությանն ընդգրկող ֆիզիկական կուլտուրայի զարգացումը, նրա կամային հատկությունների կոփումը, աշխատանքի և պաշտպանության համար պատանիներին ու աղջիկներին ֆիզիկապես նախապատրաստելը: Ժամանակի այս հրամայական պահանջը ելնում է ինչպես ֆիզիկական կուլտուրայի և սպորտի, այնպես էլ սովորող երիտասարդության ֆիզիկական դաստիարակության այժմյան խնդիրներից, որոնք բազմիցս շեշտվել են կոմունիստական կուսակցության ծրագրային փաստաթղթերում, ինչպես նաև ՍՍՀՄ սահմանադրությունում:

Մարդկային գործունեության բոլոր ոլորտներում, առանց բացառության, կրթությունն այսօր վերածվել է անհրաժեշտության: Միայն տասներորդ հնգամյակում բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության սովետական համակարգը մեր ժողովրդական տնտեսությանը տվել է 10 միլիոն որակյալ մասնագետ:

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. հուլիսի 12-ի «Բարձրագույն դպրոցի հետագա զարգացման և մասնագետների պատրաստման որակի բարձրացման մասին» որոշումից, ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը 1979 թ. հուլիսի 19-ի իր № 919 հրամանում բարձրագույն ուսումնական հաստատությունների և համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների առջև խնդիր է դրել բարելավել ֆիզկուլտուրային-առողջարարական, կուլտուր-մասսայական և մարզական աշխատանքները: Հարցի կարևորությունը կրկին շեշտվեց և խնդրի լուծման նոր ուղիներ մատնանշվեցին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1981 թ. սեպտեմբերի «Ֆիզիկական կուլտուրայի և սպորտի մասսայականության հետագա վերելքի մասին» հանրահայտ որոշման մեջ: Այս փաստաթղթում նշված են ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայականության հետագա զարգացմանը խթանող միջոցները, հանձնարարված է կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր ֆիզիկական կուլտուրայի և սպորտի կոմիտեին՝ մշակել գործնական միջոցառումներ մասսայական ֆիզկուլտուրային շարժման, ՊԱՊ համալիրի ներդրման, կուլտուր-մասսայական, առողջարարական և մարզական աշխատանքների բարելավման նպատակով:

Որոշմամբ պահանջվում է ֆիզիկական դաստիարակության ոլորտն ընդգրկել ավելի շատ ուսանողների, թերառողջ ուսանողների հետ հետևողական աշխատանք կազմակերպել՝ ավելացնելով բժշկական հատուկ խմբերի թիվը, ընդլայնել սպորտ-առողջարարական ճամբարների ցանցը, բարձրացնել մարզական վարպետությունը, ամրապնդել ուսումնամարզական բազաները, դրանք ապահովել համապատասխան գույքով և այլն: Այս ամենը կարևոր են կենսագործելու համար բարձրագույն դպրոցի ուսումնական ծրագրով նախատեսված ֆիզիկական դաստիարկության խնդիրները, այն է՝ ուսանողությանը ներարկել կոմունիստական բարձր գիտակցականություն, աջակցել համակողմանի և ներդաշնակ զարգացմանը, ամրապնդել նրանց առողջությունը, զարգացնել բարոյական, կամային, հոգևոր ու ֆիզիկական հատկանիշներ, պատրաստել նրանց աշխատանքի և հայրենիքի պաշտպանության:

Անցած հնգամյակը ՊԱՊ համալիրը մեր երկրի կյանքում արմատավորելու, սպորտային վարպետության բարձրացման, բարձրորակ մասնագետներ պատրաստելու տարիներ էին: Այդ ժամանակաշրջանում որոշ հաջողություններ ձեռք բերվեցին նաև մեր հանրապետությունում: Սակայն առկա վիճակը գոհացուցիչ չհամարելով, հատկապես աշխատավորների ու երիտասարդության մասսայական ընդգրկման առումով, ՀԿԿ XXVII համագումարը իրավացիորեն խիստ քննադատության ենթարկեց ֆիզկուլտուրայի և սպորտի վիճակը մեր հանրապետությունում:

Այդ տարիներին ֆիզկուլտուրային շարժման առաջընթացի համար կարևոր խթան հանդիսացավ ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի 1976 թ. մայիսի 31-ի «Հանրապետությունում ֆիզկուլտուրայի և սպորտի հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը, որի կենսագործումով հանրապետության կուսակցական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական ու ֆիզկուլտուրային կազմակերպությունները շոշափելի հաջողությունների հասան:

Այդ ժամանակաշրջանում Հայաստանի մարզիկները, մասնակցելով օլիմպիական խաղերին, աշխարհի, Եվրոպայի, Սովետական Միության առաջնություններին, սահմանել են 39 ռեկորդ, որից 35-ը գերազանցում է համաշխարհային ցուցանիշները: Մեր մարզիկները 469 անգամ նորացրին հանրապետական ռեկորդները, նվաճելով 495 մեդալ, որից 189-ը ոսկե, 143-ը՝ արծաթե և 163-ը՝ բրոնզե:

Այս հաջողություններում դպրոցականների ու աշխատավոր երիտասարդության հետ մեկտեղ իրենց ավանդն են ներդրել նաև հանրապետության ուսումնական հաստատությունների ֆիզկուլտուրային կոլեկտիվները: Ուսանող մարզիկներ, օլիմպիական չեմպիոններ Յուրիկ Վարդանյանը, Էդուարդ Ազարյանը, աշխարհի չեմպիոններ Յուրիկ Սարգսյանը, Գառնիկ Հովհաննիսյանը, աշխարհի գավաթակիրներ և Եվրոպայի չեմպիոններ Արշակ Սանոյանն ու Գուրգեն Բաղդասարյանը, Բենուր Փաշայանն ու Ալբերտ Նիկոլյանը, Արթուր Հակոբյանն ու Սիլվա Էմիրզյանը, Դավիթ Թորոսյանն ու Սամսոն Խաչատրյանը և շատ ուրիշներ բերկրանքի բազում պահեր նվիրեցին մարզասերներին՝ բարձր պահելով հանրապետության սպորտային պատիվը:

Որոշակիորեն ամրապնդվել է ֆիզիկական կուլտուրայի և սպորտի նյութատեխնիկական բազան: Շահագործման են հանձնվել Երևանի պետական համալսարանի հոյակապ մարզահամալիրը, պոլիտեխնիկական ինստիտուտի Լենինականի մասնաճյուղի համալիրը, կառուցվել և վերակառուցվել են Կիրովականի և Լենինականի մանկավարժական ինստիտուտների մարզադահլիճները, Երևանի Նոր Նորքի 2-րդ միկրոշրջանի ուսանողական թաղամասի լողավազանը, խաղահրապարակներն ու խաղադաշտերը: Կառուցվում են Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի մարմնակրթական նոր օջախը, Ծիծեռնակաբերդի մարզահամերգային մեծ համալիրը և այլն: Բարձրացել է ուսումնական պրոցեսի կազմակերպման որակը, գիտամեթոդական ապահովվածությունը, կատարելագործվում է ուսումնական ծրագիրը: Այսօր բուհերում աշխատում են ֆիզիկական դաստիարակության բարձրագույն կրթությամբ և գիտական աստիճան ունեցող 200-ից ավելի դասախոսներ:

Ձեռք բերված հաջողությունները մեծապես պայմանավորված են ինչպես որակյալ մասնագետներով ու բուհ ընդունված ուսանողության ֆիզիկական պատրաստականությամբ, այնպես էլ ժամանակակից մարզաբազաներով: Սակայն 1981 թ. փետրվարի 3-ին ՀԿԿ Կենտ-

կոմի բյուրոն, քննարկելով «Հանրապետության բուհերում ֆիզկուլտուրային-մասսայական և մարզական աշխատանքի վիճակի հետագա զարգացման միջոցառումների մասին» հարցը, միանգամայն ճշմարտացիորեն նշեց այդ բնագավառի լուրջ թերությունները:

Որոշման մեջ, անդրադառնալով ուսանողների ֆիզիկական դաստիարակության դրվածքին ու թերություններին, նշվում է, որ այն լիովին չի բավարարում այսօրվա պահանջներին՝ սովորող երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը և առողջության ամրապնդմանը: Բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողության միայն 54,7 տոկոսն է ընդգրկված ֆիզիկական դաստիարակության պարապմունքներում: Միջբուհական մրցումներին մասնակցում են ուսանողության ընդամենը 10 տոկոսը: 1970 թվականի համեմատությամբ, ֆիզկուլտուրայի և սպորտի մշտական պարապմունքներում ցերեկային ուսուցման ուսանողության ընդհանուր թվից ընդգրկվել է միայն 52,6 տոկոսը: Հատկապես անբավարար է վիճակը Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում, որտեղ 1970 թ. կազմակերպված մարզական միջոցառումներին մասնակցել են ընդամենը 900 մարդ կամ 8 սովորողից մեկը[1], իսկ վերջին 10 տարվա ընթացքում մասսայականության աճը կազմում է միայն 2,1 տոկոս:

ՊԱՊ համալիրը համարելով ֆիզիկական դաստիարակության սովետական համակարգի հիմնաքարը, պետք է ավելի ամուր հիմքերի վրա դրված լինի բուհերում, սակայն այստեղ ևս կան թերություններ: 1980 թ. այս օջախներում պատրաստվել են 8.710 ՊԱՊ կրծքանշանակիր, որը կազմում է սովորողների ընդամենը 20 տոկոսը: 1975 թ. հանրապետության բուհերում ՊԱՊ համալիրի նորմաները լրացրել են 5.585 մարդ կամ ցերեկային ուսուցման ուսանողության մոտ 15 տոկոսը: Թեպետև տասներորդ հնգամյակում ՊԱՊ համալիրի նորմաները հանձնողների թիվն ավելացել է 35 տոկոսով, սակայն առկա վիճակը դեռևս հեռու է բավարար լինելուց: Այսպես, եթե 1973 թ. շրջանավարտների 23,4 տոկոսն էր ՊԱՊ կրծքանշանակիր, 1975-ին՝ 39,7, 1977-ին՝ 47,8, ապա 1980 թ. այն բավականին աճել և հասել է 64,8 տոկոսի: Սակայն բարձրագույն դպրոցի առջև խնդիր է դրված, որ յուրաքանչյուր շրջանավարտ պետք է լինի ՊԱՊ կրծքանշանակիր:

ՊԱՊ կրծքանշանակիրների պատրաստման նման վիճակի հիմնական պատճառներից են ինչպես մարզական բազաների, նրանց ժամանակակից կահավորման պակասը բուհերում, այնպես էլ նախադպրոցական ու դպրոցական հիմնարկություններում երեխաների ու աշակերտների շրջանում ֆիզիկական դաստիարակության անբավարար դրվածքը: Օրինակ, լուսավորության, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունների կոլեգիաների, հանրապետական սպորտկոմիտեի և ՀԼԿԵՄ Կենտկոմի բյուրոյի 1976 թ. հունվարի 26-ի «Հանրապետության բուհերում, տեխնիկումներում և դպրոցներում ֆիզիկական դաստիարակության ուսումնական ընթացքի և ՊԱՊ համալիրի աշխատանքների դրվածքի մասին» համատեղ որոշման մեջ նշվել է, որ 1973—1975 թթ. երեք տարիների ստուգումների արդյունքները ցույց են տվել, որ Երևանի ռուսաց և օտար լեզուների մանկավարժական ինստիտուտ ընդունված առաջին կուրսեցիներից և ոչ մեկը չի եղել ՊԱՊ կրծքանշանակիր: Նույնը կարելի է ասել Երևանի գեղարվեստաթատերական ինստիտուտի և պետական կոնսերվատորիայի մասին: Լավ չէ վիճակը նաև Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի Լենինականի մասնաճյուղում, որտեղ վերջին երեք տարիներին ընդունված 1.184 մարդուց միայն 4-ն է եղել ՊԱՊ-ի կրծքանշանակիր: Երևանի բժշկական ինստիտուտի 1.281 առաջին կուրսեցիներից միայն 36-ը կամ 2,5 տոկոսն էր նորմատիվները լրացրել:

Նույն ժամանակահատվածում միջնակարգ դպրոցներից Երևանի պետական համալսարան ընդունված 4.877 առաջին կուրսեցիներից միայն 266-ը կամ 5,5 տոկոսն էր ՊԱՊ կրծքանշանակիր: Նշված փաստերը վկայում են, որ հանրապետության հանրակրթական դպրոցներում ֆիզիկական կուլտուրայի մշտական պարապմունքներում շատ քիչ թվով աշակերտներ են ընդգրկվում:

Այս բոլորը բացասաբար է անդրադառնում բուհում բարձր կարգի մարզիկների պատրաստման գործին: Հետևանքը լինում է այն, որ մարզական վարպետության կատարելագործման խմբերում քիչ թվով ուսանողներ են ներգրավվում: Հատկապես անբավարար է աշխատանքը աղջիկների և կանանց շրջանում:

Ֆիզիկական դաստիարակության առարկան մեծ դեր է խաղում ուսանողի մտածողության ակտիվացման, գիտական հարուստ ինֆորմացիաներից ստացած ծանրաբեռնվածությունից բեռնաթափման, ուսման արդյունավետության բարձրացման գործում: Այդ պատճառով էլ սովորողների ֆիզիկական պատրաստականությունը հույժ կարևոր է դառնում այսօր, որի առարկան, ինչպես նախատեսված է ուսումնական ծրագրում, պետք է մտցվի ուսումնառության բոլոր տարիների ընթացքում շաբա-

[1] *ՄԼԻ հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 1, ց. 96, գ. 44, թ. 9:*



թական երկու անգամ՝ ամեն կիսամյակում անցկացնելով ստուգարք, սակայն տարբեր պատճառներով այդ չի իրագործվում: Այս առումով մեծ ջանքեր են գործադրվում Երևանի պետական համալսարանում, որտեղ նախատեսված է մինչև 1983—1984 ուսումնական տարին ամբողջությամբ կենսագործել այդ ծրագիրը:

Բժշկականնաքննական ուսումնասիրությունները վկայում են, որ ուսանողների մոտ ֆունկցիոնալ շեղումները ոչ թե նվազել են, այլ ավելացել (կարճատեսություն, ճարպակալում, նյարդային, ներքին, էնդոկրին և այլ հիվանդություններ): Մեր հանրապետության բուհերում սովորողների զգալի տոկոսը դուրս է մնացել ֆիզկուլտուրայի և սպորտի պարապմունքներից, այն դեպքում, երբ երկրում ընդգրկվածների միջին թիվը բարձր է: Բնականաբար նման դեպքերում անպայման կավելանա բժշկական հատուկ խմբերում պարապողների թիվը, որը մեզ մոտ կազմում է ուսանողության 11 տոկոսը:

Ձևական բնույթ է կրում դիմորդների առողջական վիճակը ներկայացնող տեղեկանքը, որը չի արտացոլում դիմորդի իրական առողջական վիճակը: Երբեմն լինում է այնպես, որ հիվանդություն ունեցող դիմորդին տրվում է տեղեկանք այն մասին, որ նա լիովին առողջ է: Բուհ ընդունվելուց հետո նա ներկայացնում է բժշկական եզրակացություն այն մասին, որ այս կամ այն հիվանդության պատճառով ազատվում է ֆիզիկական դաստիարակության դասերից: Մինչդեռ հայտնի է, որ դասերից չեն ազատում, գոյություն ունեն հատուկ կամ նախապատրաստական առողջական խմբեր, որոնցում ընդգրկվում են թերառողջ ուսանողները ու, ժամանակի ընթացքում բարելավելով առողջական վիճակը, տեղափոխվում հիմնական խումբ, որտեղ ֆիզիկապես մարզվում են ըստ ծրագրի: Այդ առումով վիճակը լավ չէ Երևանի բժշկական ինստիտուտում, որտեղ ուսանողության մեկ երրորդը առողջական վիճակի լուրջ շեղում ունի, այն դեպքում, երբ բուհ ընդունվելիս դիմորդների մեծ մասը ներկայացրել է տեղեկանք նորմալ ֆիզիկական զարգացման վերաբերյալ: Անհրաժեշտ է պայքար ծավալել նման վիճակից դուրս գալու համար, բարձրացնել բժշկական ծառայությունների պատասխանատվությունը, բոլոր ֆիզիկական դաստիարակության ամբիոններին կից ստեղծել բժշկական կաբինետներ, որոնք կոչված են լայն աշխատանք ծավալելու ուսանողության ֆիզիկական կոփվածության և առողջության ամրապնդման նպատակով:

Սպորտի և ՊԱՊ համալիրի համար պատրաստած հասարակական հրահանգիչների ու մարզիչների մեծամասնությունը ոչ մի գործնական օգնություն ցույց չի տալիս իրենց իսկ կազմակերպության, բուհի, ֆակուլտետի, կուրսի ֆիզկուլտուրային և սպորտային մասսայական աշխատանքներին:

Ելնելով ֆիզիկական կուլտուրայի և սպորտի մասսայականության հետագա վերելքի մասին ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրներից, անհրաժեշտ է առանձնահատուկ ուշադրություն նվիրել ինչպես լողի, թեթև ատլետիկայի, այնպես էլ ռազմակիրառական մի շարք մարզաձևերից հասարակական մարզիչների պատրաստմանը, որոնք իսկապես և ամենուրեք պետք է դառնան պետական այս խիստ կարևոր գործի անխոնջ կազմակերպիչները:

Այս առումով ուշագրավ է եղբայրական Լատվիական ՍՍՀ-ի Եյգավայի միջկոլտնտեսային գյուղական շինարարական կազմակերպության կոլեկտիվի լավագույն փորձը, որը փառաբանված է թե՛ աշխատանքով և թե սպորտով: Ձեռնարկության շինարարներն ստեղծել են մարզական համալիր, որն ունի խաղահրապարակ, վազքուղիներ, բարձրացատկի հատվածներ, սեղանի թենիսի և խաղերի դահլիճ, որտեղ մրցումները կարող են դիտել 600-ից ավելի հանդիսատեսներ: Ութ մարզական սեկցիաներում կանոնավոր կերպով պարապում են 200-ից ավելի աշխատակիցներ և նրանց ընտանիքի անդամներ, որոնց մարզում են հասարակական հիմունքներով աշխատող մարզիչներ: Այստեղ յուրաքանչյուր երկրորդը ՊԱՊ կրծքանշանակիր է, կան առաջին կարգայիններ, սպորտի վարպետության թեկնածուներ: Ավանդական են դարձել ՊԱՊ բազմամարտի ձմեռային և ամառային սպարտակիադաները ու տարբեր մարզաձևերից մրցումները: Կոլեկտիվի ջրասպորտային մարզաձևերի ներկայացուցիչները ճանաչված են ո՛չ միայն հանրապետությունում, այլև Միությունում:

Մեր հանրապետության ոչ բոլոր ուսումնական հաստատություններն են ապահովված մարզական բազաներով, որոնց վարձակալման համար բավականին մեծ գումարներ են տրամադրվում: Շատ բուհեր հարկադրված են բազաներ վարձել ուրիշ կազմակերպություններից, որի համար տարեկան ծախսվում է 110.500 ռուբլի, իսկ մնացած սպորտ-մասսայական, առողջարարական աշխատանքների, գույքի ձեռքբերման և այլ միջոցառումների համար գումար չի մնում:

Դեռևս 1966 թվականին ՀԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը համատեղ կայացրել են «Հանրապետությունում ֆիզիկա-

կան կուլտուրայի և սպորտի հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը, որտեղ նախատեսված է, անկախ գերատեսչական պատկանելությունից, մարզական բազաները անվճար տրամադրել ֆիզկուլտուրայինմասսայական և մարզական-առողջարարական աշխատանքների կազմակերպմանը: Սակայն ոչ բոլոր դեպքերում է իրագործվում որոշումը, և մարզաբազաները օրվա մեծ մասը մնում են անօգտագործելի: Մինչդեռ, օրինակ, Մոսկվայի «Դինամո» ստադիոնում, երբ օրվա ընթացքում չկան պարապմունքներ և մրցումներ, ցանկացողները անվճար կարող են օգտվել ստադիոնի բոլոր հարմարություններից, որը, անշուշտ, օգնում է ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայական զարգացմանը: Վերջերս Մոսկվայում բացվել է «Առողջություն» թաղամասը, որտեղ մարմնամարզության համար կան բոլոր հնարավորությունները ու հարմարությունները: Այն բաց է ամեն օր, առավոտից մինչև ուշ երեկո, բոլոր տարիքի ու սեռի, տարբեր մասնագիտությունների տեր մարդկանց համար:

ՍՄԿԿ XXVI համագումարում կարևորվեց ֆիզիկական կուլտուրայի և սպորտի ներդրումը ամենալայն մասսաների կենցաղում և դրանից ելնելով խնդիր դրվեց կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական, կոմերիտական, հասարակական և ֆիզկուլտուրային կազմակերպությունների առջև՝ ֆիզիկական կուլտուրան դիտել որպես կարևոր միջոց սովետական մարդու հոգևոր և բարոյական կատարելագործման ասպարեզում, որը, անշուշտ, կնպաստի նրա բազմակողմանի և ներդաշնակ զարգացմանը, բարձրորակ, առողջ և հմուտ մասնագետ կադրեր պատրաստելուն, աշխատանքի բարձր արտադրողականությանը, աշխատավորության ակտիվ հանգստի պատշաճ մակարդակով կազմակերպմանը, հայրենիքի պաշտպանությանը նախապատրաստելուն:

ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումներում մեծ ուշադրություն դարձվեց նաև ֆիզիկական կուլտուրայի և սպորտի մասսայականացմանը: Դրա հետագա զարգացման նպատակով անհրաժեշտ է սովետական յուրաքանչյուր մարդու, սովորողի և աշխատավորության լայն զանգվածներին մասնակից դարձնել, ներգրավել տարբեր մարզաձևերի, տուրիզմի, սպորտային-մասսայական, առողջարարական, ՊԱՊ համալիրի հանձնման նպատակով խմբակների պարապմունքներում:

1981 թ. սեպտեմբերին կայացած ՀԼԿԵՄ Կենտկոմի պլենումում «ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումների լույսի ներքո մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման ուղղությամբ կոմերիտմիության կոմիտեների խնդիրների մասին» որոշման մեջ ասված է, որ կոմունիստական հասարակարգի կառուցման գործում բազմակողմանի զարգացած անհատի դաստիարակությունը պահանջում է ֆիզկուլտուրան և սպորտը երիտասարդության կենցաղում ներդնել և նրանց նախապատրաստել հայրենիքի պաշտպանության վսեմ գործին:

Սովետական երիտասարդության կոմունիստական դաստիարակության անբաժանելի մասը կազմող ֆիզիկական դաստիարակության կատարելագործման համար առանձնահատուկ նշանակություն ունի գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքների ճիշտ կազմակերպումը: ««Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքների հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի ապրիլի 26-ի որոշման կենսագործման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին» զեկուցումով հանդես գալով, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «Մեր դաստիարակչական աշխատանքներում խիստ կարևոր տեղ պետք է գրավի պատանիների ու աղջիկների ֆիզիկական կոփումը: Դրա համար մենք ունենք բոլոր հնարավորությունները: Անհրաժեշտ է ավելի նպատակասլաց ու արդյունավետ օգտագործել այդ հնարավորությունները, հասնել ֆիզկուլտուրայի մասսայականության և սպորտային վարպետության բարձրացմանը»:

Այսօր, ինչպես երբևէ, գիտության և տեխնիկայի բուռն զարգացման ժամանակաշրջանում, բնականաբար, մեծանում է ֆիզիկական կուլտուրայի և սպորտի դերը յուրաքանչյուր մարդու կյանքում: Հիրավի, ֆիզիկական դաստիարակությունը սոցիալիստական հասարակության հոգևոր կյանքի կարևոր արժույթներից է, անհատի բազմակողմանի ձևավորման անհրաժեշտ միջոցը, որի արդյունավետությունը բարձրացնելու համար հանրապետության ֆիզկուլտուրայի և սպորտի բնագավառի աշխատողներից պահանջվում է բազմապատկել իրենց ջանքերը:



# Հ. Գ. ՔՈՒՐԴՅԱՆԸ՝ Ն. Գ. ՉԵՐՆԻՇԵՎՍԿՈՒ ԳՐԱԳԻՐ

ՄԵՐ՝ **Ն. Գ. ՉԵՐՆԻՇԵՎՍԿԻՆ և Աստրախանի հայկական գաղութը** («Լենինյան ուղիով», 1980, № 7) հոդվածում գրել էինք այն մասին, որ ռուս մեծ հեղափոխականն ու մտածողը, 1883—1889 թթ. ապրելով Աստրախանում, բավականին լայն շփում է ունեցել այնտեղ ապրող հայերի հետ, ունեցել է նրանց մեջ իր ծանոթներն ու բարեկամները: Կնոջը՝ Օլգա Սոկրատովնային գրած նամակներից մեկում Չերնիշևսկին հիշատակում է, որ նա երկու անգամ՝ 1887 թ. և դրանից առաջ, հրավիրել է ինչ-որ մի «հայ տղայի»՝ գրագրի պաշտոնով «իրեն օգնելու»:

Ո՞վ է եղել այդ «հայ տղան»: Չերնիշևսկու մոտ նա կոչվում է «Ամվրոսի Մարտինովիչ»: Նրա մասին մենք ուրիշ ոչ մի տեղ այլևս տեղեկությունների չենք հանդիպում: «Երևի,— գրել ենք մենք մեր վերոհիշյալ հոդվածում,— այդ տղայի անուն ազգանունը խիստ ռուսականացած և աղավաղված է»:

Այժմ մենք հնարավորություն ունենք պատմելու, արդեն որոշակի կերպով, մի հայի մասին, որ այդ իսկ տարիներին աշխատել է Չերնիշևսկու մոտ՝ գրագրի պաշտոնով: Հարց է ծագում. արդյոք դա Չերնիշևսկու հիշատակած տղան չէ՞: Վճռական պատասխան տալ այս հարցին, դժվար է: Հայտնի է, որ Չերնիշևսկին այդ տարիներին դիմել է մի շարք անձանց՝ իրեն օգնելու որպես գրագիր: Նրանց թվում եղել են և հայեր՝ մեկ, գուցե և երկու հոգի: Բացի դրանից, նոր մարդու անուն ազգանունը բոլորովին այլ է և, անկասկած, վկայում է հայկական ծագման մասին:

Խոսքը Իվան Կալուստովիչ Քուրդովի, հետագայում Ուրալում առողջապահության ասպարեզում աշխատող հայտնի գործչի մասին է: 1968 թ. սովետական բժշկական հասարակայնությունը նշել է նրա ծննդյան 100-ամյակը: Քուրդովին լավ ճանաչող բժշկական գիտությունների թեկնածու Ե. Ի. Կարնաուխովան հոբելյարին նվիրված իր հոդվածում («Советское здравоохранение», № 2. 1968) առաջին անգամ հրապարակավ նշում է, որ սովետական բժշկության այդ անխոնջ մշակն իր երիտասարդ տարիներին անձամբ ճանաչել է ռուս մեծ հեղափոխականին և աշխատել նրա մոտ որպես գրագիր:

Կարնաուխովայի տվյալներով, «Ի. Կ. Քուրդովը ծնվել է 1867 թ. հուլիսի 12-ին, Աստրախանում, աշխատավորի ընտանիքում (հայրը արհեստավոր էր, մայրը՝ դերձակուհի): Դեռևս գիմնազիայում ուսանելու տարիներին Իվան Կալուստի Քուրդովը ծանոթանում է քաղաքական աքսորյալների հետ, որը մեծ ազդեցություն է գործում նրա աշխարհայացքի ձևավորման վրա: Դեռևս պատանի, նա բախտ է ունեցել որպես գրագիր աշխատելու Նիկոլայ Գավրիլովիչ Չերնիշևսկու մոտ, որին 1883 թ. հոկտեմբերին Աստրախան էին բերել Վիլյույսկից: Ի. Կ. Քուրդովը վառ հիշողություններ է պահպանել Նիկոլայ Գավրիլովիչի մասին»:

Հատկանշալի է, որ Կարնաուխովայի հոդվածը հարուցեց պատմաբանների և հատկապես Ն. Գ. Չերնիշևսկիով զբաղվող հեղինակների հետաքրքրությունը: Պատմաբան Վ. Ե. Ֆիգուրը խնդրում է Կարնաուխովային ավելի մանրամասն գրել Քուրդովի՝ իրեն պատմած հիշողությունները Չերնիշևսկու մասին:

Ստորև բերում ենք Կարնաուխովայի նամակներից այն բոլոր տեղերը, որոնք վերաբերում են Ի. Կ. Քուրդովին և Չերնիշևսկու մասին նրա պատմածներին:

«Ի միջի այլոց, ես միաժամանակ Քուրդովի հետ աշխատել եմ Պերմի գավառային երկրամասում և հանդիպել եմ բժշկական խորհուրդներում, իսկ հետագայում՝ սանբյուրոյում: 1934 կամ 1935 թթ. մենք հանդիպեցինք Կուրվի Ուրալսկիե կուրորտում, և այդ ժամանակ Իվան Կալուստովիչը պատմեց իր հիշողությունները Աստրախանի, աքսորյալների հետ իր հանդիպումների և Չերնիշևսկու մոտ աշխատելու մասին»:

Իր մյուս նամակում Կարնաուխովան գրում է. «Մեր խոսակցությունները Չերնիշևսկու մասին Ի. Կ. Քուրդովի հետ տեղի ունեցան մոտավորապես 1935—1936 թվականներին: Նա 60-ից անց էր, մոտ 70 տարեկան: Հնարավոր էր, որ կես դարի ընթացքում որոշ բաներ մոռացված լինեն: Մոռանալ կարող էի և ես՝ ավելի քան երեք տասնամյակի ընթացքում: Հիշում եմ, երբ Քուրդովն սկսում էր խոսել Ն. Գ. Չերնիշևսկու մասին, աշխուժանում էր և ասես

անեմ: Վաղուց էս մուրազը սրտումս կար, վախտ չէի ճարում»: Եվ Աղասին իր «սրտի հասրաթը» կատարեց: Իր հաղթ բազուկը և կտրուկ սուրը, իր բովանդակ կյանքը նվիրաբերեց հայրենիքին: Վերհիշենք, թե ինչպիսի հրճվանքով ներկայացավ նա գեներալ Մադաթովին՝ իր ցանկությունը հայտնելու: Դա 1828 թվականին էր, ռուս-պարսկական պատերազմի թեժ օրերին, երբ ռուսական բանակի հաղթարշավի առաջ ընկավ Երևանի բերդը. «Լեռ քարափի վրա՝ ցից գլուխը բարձրացրած, թամաշա անող հազար գլխանի դևի պես՝ Երևանու՝ հազար տարեկան քավթառ, պառաված, չորս կողմը խանդակով կապած, բրջերով ղայիմացրած, սուր-սուր ատամները գլխին շարած... անմազ, անլեզու, մարդակեր բերդը»՝ խորհրդանիշը զառամած պարսկական բռնապետության: Երևանի բերդի գրավման ժամանակ ընկավ Աղասին, արյունաշաղախ ընկավ, ազատասեր հայորդին: Այդ տեսարանին ականատես եղան «սարերի սարը՝ Արարատը» և հպարտ ալվոնների քաջ զավակները: Այդ հերոսական մարտերում էր, որ արյունով հաստատուն դաշինք կնքվեց հայ և ռուս ժողովուրդների միջև: Եվ պատմությունը խնամքով պահեց կատարված հերոսամարտի մասնակիցներից շատերի անունները: Դեկաբրիստ Լաչինովը իր **Խոստովանանք** հուշագրքում հուզիչ տողերով պատմում է այն մասին, թե ինչպես տառապած հայ ծերուկները, անօգնական կանայք, ու մինչև իսկ հազիվ խոսել սովորած երեխաները նետվում էին ռուս զինվորների առաջ՝ գոչելով՝ Рус! Рус! Здрасти! Այս երկու բառերով նրանք արտահայտում էին իրենց սերը ռուսների հանդեպ: «Не бойтесь», ասում էին ռուս զինվորները տառապած հայ ամբոխին: «Հայերի երախտապարտությունը հուզում էր մեզ... Դժվար էր զինվորներին պահել շարքերի մեջ: Ամեն մի զինվոր առաջ էր նետվում՝ ավելի շուտ օգնություն ցույց տալու տառապածներին»,— գրել է Լաչինովը: 1826—1828 թվականների ռուս-պարսկական պատերազմի ընթացքում տեղի ունեցած այս դեպքերն ու եղելությունները գեղարվեստական մեծ ուժով ու շնչով վերարտադրված են Աբովյանի վեպում: Վերջինիս էպիկական-պատմողական ժանրը, սակայն, ամենևին չի սառեցնում սրտի արյունով գրված այդ զարմանալի ստեղծագործության ներքին ջերմությունը: Եվ դա միանգամայն հասկանալի է: Չէ՞ որ **Վերքը** գրված է դեպքերին ականատես և դրանք խորապես վերապրած հեղինակի կողմից և այն հայելին է, որի մեջ ցոլացել են ժամանակի կյանքն ու կատարված դեպքերը: Ընթերցողը, հիրավի, շատ բան է իմանում այդ վեպից ռուս-պարսկական պատերազմի և հայ կյանքի վերաբերյալ, բան շատ ու շատ պատմական փաստաթղթերից: **Վերք Հայաստանին** վերարտադրում է ո՛չ միայն հայ ժողովրդի կյանքն ու կենցաղը, նրա կրած տառապանքներն ու մղած պայքարը պարսկական բռնապետության դեմ: Դա միաժամանակ մի ներբող է ռուս ժողովրդին, նրա հզորությանը: Տակավին նոր էր օդում լռել թնդանոթների որոտը, դեռ նոր էր սթափվում և ազատ շունչ քաշում հայությունը, երբ «քույր Վոլգայի» զավակները ռուսական բանակում ծառայող դեկաբրիստների ուժերով բեմ հանեցին հայ ժողովրդի մեծ բարեկամի՝ Գրիբոյեդովի մինչ այդ ոչ մի տեղ չբեմադրված և չտպագրված **Խելքից պատուհասը:** Գրիբոյեդովի արձանը Հայաստանի մայրաքաղաքում վերածնված հայ ժողովրդի անկեղծ երախտագիտության պերճախոս արհավատչյան է:

Մեզ հետ են եղել միշտ և հանապազ ռուս ժողովրդի լավագույն զավակները նաև հետագա ժամանակներում, երբ հայերի գլխին վերստին «որոտում էր ամպրոպը»: Հիշենք, թե ինչպիսի հրաշեկ խոսքերով անարգանքի սյունին գամեց Մաքսիմ Գորկին «մեծ մարդասպան» սուլթան Համիդին և նրա՝ «մինչև ականջները ցեխի և արյան մեջ խեղդվող» հետնորդներին: Իսկ երբ ավարտվում էր հայ ժողովրդի դրամատիկ պատմության վերջին եղերական գործողությունը՝ ցեղասպանությունը, Գորկին, Բրյուսովը, Մառը, Գորոդեցկին և ուրիշներ վերստին ձեռք մեկնեցին մեզ: «Չի լքում մեզ Ռուսաստանը», հուզված ասում է Հովհաննես Թումանյանը «Քաղաքների Միության» կողմից Վանի ճակատ մեկնող Գորոդեցկուն:

Մեծ հայրենասերներ Հովհաննես Թումանյանը, Ավետիք Իսահակյանը, Վահան Տերյանը և ուրիշներ լավ գիտակցեցին Աբովյանի պատգամի մեծ խորհուրդը: Իր **Կարևոր հույսն ու դարավոր ճանապարհը, Արևելքի նոր դարագլուխը** հոդվածներում, Հովհաննես Թումանյանը, մի հայացք ձգելով մեր անցյալի պատմության վրա, զգաստացնում է բոլոր նրանց, ովքեր տակավին հույսեր են կապում գլադստոնների, դիլոնների հետ, որոնք լոկ խոսքով էին հանդես գալիս իբրև հայերի ոտնահարված իրավունքների պաշտպաններ: Իսկ երբ նոր ամպրոպ ճայթեց բռնապետական Տաճկաստանում, հայությանը «օգնության ձեռք մեկնող» Անգլիան՝ իր պրեմիեր-մինիստր Սոլսբերիի բերանով այսպես պատասխանեց. «Մեր նավերը չեն կարող լողալ հայոց լեռների գագաթներին»: «Մինչդեռ,— նկատում է Թումանյանը,— աշխարհին հայտնի է, որ սուլթան Աբդուլ Համիդը նստում էր ոչ թե հայոց լեռների գագաթներին, այլ Բոսֆորի ջրերի ափերին, ուր միշտ կանգնում են անգլիական նավերը» (Հովհ. Թումանյան, **Երկերի ժողովածու**, հ. 4, Երևան, 1969, էջ 170):

Կծու հեգնանքով է խոսել ու գրել նաև մեծ երգիծաբան Հակոբ Պարոնյանը հայկական հարցը լոկ խոսքով պաշտպանող եվրոպական տերությունների մասին, որոնք «առատ-առատ նոթաներ» են տվել Թուրքիային, «բայց մուզիքային ձայնը» երբեք չի լսվել: Իրենց ռազմանավերը ձևականորեն Բոսֆորի ափերը բերող եվրոպական մեծ տերությունների մասին Պարոնյանը գրել է. «Եվ որովհետև նավային ցույցին զորությունը լոկ բարոյական է՝ կառաջարկեմ, որ վեց տերությունները պարապ տեղը մեծ ծախքերու չենթարկվեն՝ իրենց զրահավորները Թուրքիա ղրկելով. հերիք է, որ այդ զրահավորներուն պատկերները քաշել տան և շրջանակի մը մեջ անցունելով, ղրկեն մեզի, որ Բ. Դրան մեջ պատե մը կախենք» (Հ. Պարոնյան, **ԵԼԺ**, հ. 4, Երևան, 1934, էջ 66):

«Ռուսաստանը և միայն Ռուսաստանը թուրք բարբարոսներին կասի իր ահեղ խոսքը՝ «հերիք է», և կանգ կառնի արյունոտ հունձը»— ասում էին Ալեքսեյ Ջիվելեգովը և Հովհաննես Թումանյանը: «Հարկավ, մարդիկ կլինեն,— գրում է Թումանյանը,— որ կառարկեն, թե էդ ամենը Ռուսաստանն արել է, կանի, որովհետև էդպես են պահանջում իր շահերը: Ես դրան կպատասխանեմ... Ավելի լավ, որ հզոր Ռուսաստանի ու հայ ժողովրդի շահերը բռնում են իրար: Հենց դրա մեջն է կայանում հայ ժողովրդի օգնությունը, և դրանով է նա հաստատ:

Ահա թե ինչու և ինչպես իմ հույսերն ու համակրանքը կապվում են Ռուսաստանի հետ» (Հովհ. Թումանյան, **Երկերի ժողովածու**, հ. 4, էջ 152):

Հայտնի է, թե ինչ հրճվանքով ընդունեց Թումանյանը արդեն նո՛ր Ռուսաստանը. «Ամենից լքված ու հուսահատված հայ ժողովուրդը իր հայացքը դարձրեց դարձյալ դեպի Ռուսաստանը: Եվ եկավ նա, նոր Ռուսաստանը: ...Նոր Ռուսաստանը, որ գալիս է նրանց հանի էդ ստրկական վիճակից, նոր դարաշրջան է բաց անում մարդկության պատմության մեջ...» (նույն տեղը, էջ 417):

Թումանյանը երազում էր, որ ռուսերեն թարգմանվի Աբովյանի **Վերքը**, որը կոչ է անում հայությանը դաշնակցել Ռուսաստանի հետ: Մեր օրերում իրականացավ Թումանյանի այդ փափագը. Ս. Շերվինսկու թարգմանությամբ լույս տեսավ **Վերք Հայաստանին**:

Իր գրական գործունեության առաջին իսկ օրերից Ավետիք Իսահակյանը ևս դարձավ ռուսական կողմնորոշման ջատագով: Նա, որ տարիներ շարունակ ապրել էր Եվրոպայում և լավ ծանոթ էր եվրոպական պետությունների դիվանագիտական խաղերին, քաջ գիտակցեց, որ հայերի բախտը պատմականորեն կապված է Ռուսաստանի հետ: Բանաստեղծը արգահատանքով է գրում կանցլեր Բիսմարկի մասին, որը ցինիկաբար հայտարարել էր, թե՝ «հայ ժողովուրդը չարժե մի պոմերանցի (գերմանացի) զինվորի փթած ոսկորներին...»: Սան-Ստեֆանոյի դաշնագրի 16-րդ հոդվածը նույն կանցլերի ջանքերով և խարդախությամբ վերածվեց 61-րդ մեռած հոդվածի, որը, հայության սիստեմատիկ բնաջնջման զենք դարձավ Աբդուլ Համիդի ձեռքում: Իսկ այլասերված Վիլհելմ II կայսրը լկտիաբար հայտարարեց, թե հայերից պիտի թողնել միմիայն մի մարդ, իբրև ազգագրական թանգարանի օբյեկտ... «Հայ ժողովրդի սրտի մեջ,— շարունակում է Իսահակյանը,— շիկացած երկաթով անջնջելիորեն գրած են այս ամենը»: Բանաստեղծն զգուշացնում էր այլախոհներին, հետադարձ հայացք ձգել մեր ոչ վաղ անցյալի պատմության վրա, լավ իմանալու այդ ամենը: «Պետրոս Մեծի երևան գալուց սկսած,— գրում է նա **Խաչատուր Աբովյան** հոդվածում,— պարսիկ շահերի լծի տակ հյուծվող հայությունը ձգտելով ձգտում էր, երազելով երազում միանալ ռուս նորածագ պետությանը, ընդունել նրա թևարկությունը... Այս երազը իրականացնելու համար Կովկասի հայերը ամբողջ մի դար պայքարեցին զենքը ձեռքներին, արյուն թափեցին ռուս զինվորի հետ միասին և հաղթանակեցին: Խաչատուր Աբովյանը այս հայրենասերներից մեկն էր, ռուսասերներից ամենից համոզվածը և՛ հետևողականը, և՛ ոգևորվածը: Նա իր բովանդակ հանճարը, իր բոցավառ սիրտը, իր փոթորկաշունչ երևակայությունը նվիրեց հայ ժողովրդի հանդեպ ռուս ժողովրդի տածած սիրո փառաբանությանը... Եվ ոգեշնչված այս զգացմունքներով ու գաղափարներով՝ նա սրտի արյունով և հոգու կրակով գրեց աշխարհի ամենից սրտառուչ գրքերից մեկը՝ «Վերք Հայաստանին»» (Ավ. Իսահակյան, **Երկերի ժողովածու**, հ. 4, 1951, Երևան, էջ 118):

Հենց այդ գիրքն էլ մոգական ազդեցություն ունեցավ և փարոսի պես լուսավորեց Ռուսաստանի հետ անխզելի դաշինքի ուղին: Եվ մեծ բանաստեղծը երբեք չընկրկեց այդ ճանապարհից: «Ռուսական մի կարմիր զինվորի ներկայությունը հայոց երկրի սահմանների վրա արժե հազար Վիլսոն ու Ազգերի լիգա, հազար Մակդոնալդ ու Հերիո. սա բացարձակ ճշմարտություն է»— համոզված ասում ու գրում էր Իսահակյանը:

Աբովյանի դարակազմիկ նշանակություն ու-

## Նոր գրքեր

# «ԸՆՏՐՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԸ»

ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԶԵՎԱՎՈՐՄԱՆ, նրա հոգևոր աշխարհի հարստացման, մատաղ սերնդի բարոյական դաստիարակության հարցերը միշտ եղել են կուսակցության հոգածության առարկան: Այդ հարցերի շուրջ ստեղծվել և ստեղծվում է գիտահետազոտական, գիտահանրամատչելի գրականություն: Այդ պրոբլեմները համակողմանի արծարծվում են նաև գեղարվեստական գրականության ու արվեստի գործերում, արժանանում համընդհանուր ուշադրության:

«Սովետական գրող» հրատարակչությունը լույս է ընծայել Բ. Գ. Բաշկիրովայի **Ընտրության ժամանակը** գրքույկը, որը ջերմորեն ընդունվեց ընթերցող հասարակայնության, հատկապես պատանեկության՝ միջին ու բարձր տարիքի աշակերտների կողմից: Երկարատև մտորումների և ուսումնասիրությունների արդյունք է այն, ուր արծարծվել են երիտասարդությանը, պատանիներին, ծնողներին, մանկավարժներին հուզող, մտահոգող շատ հարցեր:

Ի՞նչ է ինքնադաստիարակությունը: Ինչի՞ց է սկսվում այդ պրոցեսը: Ծնողները ինչպե՞ս պետք է կազմակերպեն իրենց փոխհարաբերությունները դեռահասների հետ նրանց կյանքի այդ ամենաբարդ ժամանակաշրջանում: Ի՞նչ է նշանակում նպատակային դաստիարակություն: Ինչպե՞ս օգնել դեռահասին՝ կատարելու այն առարք-ընտրությունները, որոնք ձևավորում են նրա անհատականությունը... Դեռահասի դաստիարակության, նրա կերպարի ձևավորման համար անչափ կարևոր են հեղինակի շոշափած հարցերը, անհրաժեշտ ու այժմեական: Ինչո՞ւ է դեռահասը փողոց ձգտում, ի՞նչն է գրավում նրան. դպրոցը, ընտանիքը, թե՞ փողոցն է ավելի ներգործում մարդու վրա մանկության ու պատանեկության տարիներին: Հարցեր, որոնց պատասխանն է փորձում տալ Բաշկիրովան:

Բնականաբար, մանուկ հասակում մարդ ձգտում է արկածների, սիրում արկածներով լի կինոնկարներ դիտել, գրքեր կարդալ և մի՞թե պատահական է, որ պատանիները Լերմոնտովին ավելի շատ են սիրում, քան Պուշկինին, «...որովհետև դեռահասն զգում է այն, ինչ պոետը՝ առագաստը փոթորիկ է տենչում»:

Համոզիչ ու հրապուրիչ օրինակներով գրողն ընթերցողին մղում է լուրջ խորհրդածությունների, հանգեցնում ճիշտ եզրակացությունների: Ընթերցողին համակում է և հեղինակի խոր հավատն ու սերը պատանիների հանդեպ, համոզում, որ մեծերը պետք է կարողանան հասկանալ նրանց. չէ՛ որ նրանք ևս սխալվելով, սխալները շտկելով են հարթել իրենց կյանքի ուղին, հասկացել կյանքի էությունն ու իմաստը: Ուրեմն, իրավամբ գրում է նա. «փորձելով ու զգալով, հիանալով ու հիասթափվելով, ի վերջո ձեր որդին կամ դուստրը կհասկանա այդ ամենը...»: Իհարկե, յուրաքանչյուր մեծ պետք է առաջին հերթին վերապրի իր անցած կյանքը, վերհիշի իր կյանքի «փոթորկոտ» ճանապարհը և ըստ այդմ վերաբերվի մանուկների, դեռահասների հետ: Ե՛վ արգելքները, և՛ նկատողություններն ու սաստումները պետք է լինեն տեղին ու չափավոր, որովհետև «որքան էլ որոշ ծնողներ, ուսուցիչներ արգելեն կարդալ անհարկի գըրքեր, միևնույնն է, կկարդան, միևնույնն է կխաղան, կմխրճվեն խավարի մեջ, որպեսզի իրենք իրենց փորձեն»: Այնուամենայնիվ, նըրանք հենց այնպես չեն կարդում, այլ կարդացածից անում են իրենց անհրաժեշտ հետևությունը, փնտրում իրենց իդեալը, հերոսներին, փորձում նմանվել: Իսկ այդ փորձերն սկսվում են հենց փողոցում, դպրոցում... Այնպես որ, փողոցը ևս ամենևին էլ անկարևոր ու ավելորդ չէ մարդու կյանքում:

«Փողոցում երեխան պետք է սովորի պայքարել, պարտվել ու հաղթել, պաշտպանել իր պատիվը, հակահարված տալ իր դեմ ուղղված ոտնձգություններին: Ես ամենևին չեմ փորձում իդեալականացնել փողոցն իր բոլոր հնարավոր վտանգներով, բայց այն ունի նաև դաստիարակչական այս կողմը: Փողոցն ամբողջ մի աշխարհ է, որ բացվում է դեռահասի առաջ՝ իր օրենքներով, ուր մի կողմից ամեն ինչ խիստ բացահայտ է, մյուս կողմից ծածկված, քողարկված է նորեկի անփորձ աչքից»:

Հեղինակի հարցադրումն իրավացի է. երեխան, և ինչո՞ւ միայն երեխան, մեծահասակն ինքն էլ է շրջապատում փորձվում, կոփվում:

Արկածների ձգտող պատանին ձգտում է անհայտ նորին, այն ձեռք բերելու ուղիներ է փնտրում: Նպատակին հասնելու համար դեռահասն սկսում է դիտել իր շրջապատը, առաջին հերթին ծնողներին, ուսուցիչներին, ավագ եղբորը, քրոջը, ընկերներին: Այստեղից էլ սկսվում են թվացող մանրուքները. դեռահասի համար մանրուքներ չկան: Կենցաղային մանրուքներից է ձևավորվում ծնողների կերպարը երեխայի համար: Երեխաները փորձում են որոշակի վերաբերմունք մշակել ծնողների, ուսուցիչների, տարեցների նկատմամբ, իսկ մեծերը վարժված են վարվել ուժի դիրքերից, մոռանալով, որ իրենց առջև, իրենց ամեն քայլին ուշադիր հետևող, տպավորվող, դյուրազգաց էակներ են:

Հեղինակն իր ասածը հիմնավորելու համար կյանքից վերցրած օրինակներից, թերթերին ու հանդեսներին դեռահասների հղած նամակներից բազմաթիվ նմուշներ է բերում, որտեղ պատանիներն ու աղջիկները դժգոհում են մեծերի անհարկի միջամտություններից:

«...Իմ առջև նամակների կույտեր են: Նամակներ «Կոմսոմոլսկայա պրավդային», «Ալի պարուսին», «Ալի պարուսի» հոգեբանության լաբորատորիային, ռադիոյի «Ռովեսնիկի» հաղորդման հեղինակներին, վերջապես, երեխաների՝ վերջին տարիներս անձամբ ինձ ուղղած նամակներ՝ նամակ-խոստովանություններ, նամակ-օրագրեր, նամակ-պատմվածքներ, նամակ-բանաստեղծություններ, նամակներ— կոնկրետ խորհրդի խնդրանքով»:

Հեղինակը ցավով է նշում, որ որքան էլ դառն լինի խոստովանել՝ այս նամակներում երեխաներն ավելի ուշադիր ու նրբանկատ են, քան մեծերը: Եվ իրոք այդ նամակները ծնողների, մեծերի դաստիարակության շատ նըրբին ու օգտակար տարրեր են պարունակում:

«Մեծե՞րը: Ինչ-որ շատ մեծ են, խելացի, շարունակ ինձ ուսումնասիրում են: Մեծերի մեջ ինձ վախեցնում են «մանրուքները». մեծը կարող է վիրավորել և չնկատել այդ, կսկսի բացատրել և չի ավարտի, կսկսի պատմել և կիսատ կթողնի, կձանձրացնի...», գրում է Մոսկվայից Իլյա Ա-ն:

Անզուսպ եռանդով լի միլիոնավոր դեռահասներ, գրում է հեղինակը, շարունակ, բացի արձակուրդներից, գամվում են իրենց հաստատուն տարածքին՝ դպրոցին, փողոցին, քաղաքին, ծնողներին ու ուսուցիչներին, բայց միևնույնն է գալիս են «թափառումների տարիները», բազում հնարավորություններից, տարբերակներից մեկն անձամբ ընտրելու տարիները: Եվ դրանք պետք է ապրել ու վերապրել: Սակայն որտե՞ղ...

Դպրոցը այն վայրն է, որտեղ դեռահասն ավելի շատ ժամանակ է անցկացնում, որտեղ նա պետք է գտնի ըմբռնում, օգնություն, հանդիպի իրեն նոր աշխարհներ տանող, հրապուրող և առաջ մղող ուսուցչին, դրանով իսկ որոշելով կյանքի հետագա ընթացքը: Այդ առումով դպրոցի և ծնողների նպատակը նույնն է. երեխային սովորեցնել ո՛չ միայն դպրոցական տվյալ առարկան, այլև սովորեցնել անձամբ թափանցել ինքն իր մեջ, մղել ինքնապրպտումի, ինքնորոնումի, անձամբ որոնելու և անձամբ գտնելու:

Ծնողներին ոչ միշտ է հաջողվում գտնվել անհասների բարձունքում: Երեխաներից պահանջում ենք մի բան, իսկ իրականում ինքներս կատարում հակառակը, հայրը չի մոտենում հեռախոսին, թե՝ տանը չեմ, մայրը նախազգուշացնում է, թե հայրիկին չասես, տատիկը՝ ծնողներիդ չպատմես: Ծնվում է սուտը. մանուկ հոգին արդեն աղճատվում է, աղարտվում... Նման ընտանիքում մեծացածը կարո՞ղ է արդյոք չստել, չկեղծել: Կամ մայրը դաստիարակում է, թե բարի եղիր, սակայն արգելում է օգնել ընկերոջը, իր բաժինը տալ նրան, կամ իր փողով ընկերոջը կինո տանել: Ո՞ւր մնաց բարությունը... Ծնողը պահանջում է երեխայից, սակայն պահանջելը քիչ է, պարտավոր է սովորեցնել անձնական օրինակով, ստեղծել իրավիճակներ, որտեղ երեխան համոզվի, հավատա, համակվի բարի, ընկերասեր, մարդասեր, ճշմարտախոս, արդարամիտ լինելու ցանկությամբ:

Մոդային հագնվելը, ժամանակակից երևալը դեռահասի ձգտումն է, այդ օրինաչափ երևույթ է: Սակայն այն պետք է լինի վերապահումով, իրերի աշխարհը չդառնա այն միակ իրականը, ուր դեռահասը ձգտում է դրսևորվել: Այդ արդեն պայմանավորված է մեծերով, հոգևոր այն մթնոլորտով, որ ըստեղծում են նրանք սեփական տանը:

Սակայն չպետք է երեխաներին վարժեցնել անհոգ կյանքի, որի հետևանքը կլինի այն, որ նրանք կսովորեն միայն ստանալ, փոխարենը ոչինչ չտալով: Այստեղից էլ սկսվում է սխալ դաստիարակությունը: Շատ անգամ «անհոգ» կյանքի տենչը, աշխատանքից խույս տալը հասցնում են հանցագործության: Եվ սկսվում է ծնողների, մանկավարժների տանջալի, հոգեմաշ քաշքշուկը, ո՞վ էր մեղավոր, ինչպե՞ս պատահեց, և նոր սկսում են ետ ու ետ նայել... և լավ է, եթե գտնում են սկզբնապատճառը, որովհետև հաճախ է պատահում, որ ամեն ինչի մեղքը վերագրվում է ամենևին էլ ոչ իրական պատճառին:

«Ինքնադաստիարակումը պետք է սկսել ծընողներից, սեփական երեխային հասկանալու ունակությունից»,— ասում է հեղինակը: Երեխան պետք է մեծանա երջանիկ՝ ուժից վեր դժվարություններից ու լարվածությունից

պաշտպանվող գրահով, մեծերը պետք է հարմարվեն այդ պահանջին, իսկ եթե ժամանակին չպոկվի այդ գրահը, այլ հակառակը՝ ներաճի, ապա «...հոգում գրահ ունեցող մարդը կդառնա ոչ լիարժեք»:

Գրականությունը սովորեցնում է կարեկցել: Բոլոր դարերի, հազարամյակների միջից այն սովորեցնում է մարդու մեջ տեսնել մարդկայինը, սովորեցնում մարդ դառնալ, ներառնելով ընթերցողին մարդկային հոգու, կյանքի ողջ նախորդ պատմության մեջ: Հետևաբար անհրաժեշտ է, որ երեխան կարդալ սկսի մանուկ հասակից, ինչպես հեղինակն է ասում՝ «...կյանքի կարևոր ժամանակում՝ մանկության, պատանեկության տարիներին»:

Պատանիներին թվում է, թե իրենք շատ բան գիտեն, կարող են ամեն ինչ անել, հրապուրվել այն ամենով, ինչ մատչելի է թվում իրենց, և սկսվում է թափառումների, որոնումների մի շրջան, որը հետո կամաց-կամաց կարգավորվում է. երազները դառնում են իրականություն: Սակայն լինում է և հակառակը, ամեն ինչ կատարյալ է, բայց... պարզվում է, որ միայն խաբկանք է եղել և ամեն ինչ պետք է սկսել նորից: Հեղինակը տեղին է վկայակոչել Ալեքսանդր Բլոկի խոսքերը. «Ամեն մարդու մեջ բարին կռվում է չարի հետ: Եվ միշտ չէ, որ լավագույնն է հաղթում»:

Գալինա Բաշկիրովան կարողացել է խորիմաստորեն տեսնել ու ընթերցողին ներկայացնել այն ամեն դրականն ու բացասականը, որ կարող է ուղեկցել յուրաքանչյուր դեռահաս-պատանու և կարող է հուզել ամեն մի ծնողի՝ լինի նա գիտնական, բանվոր թե այլ գործավոր: Ժամանակակից մարդը միշտ պետք է համընթաց քայլի կյանքի հետ, հաստատի ու զարգացնի այն ողջ լավագույնը, ինչ սկզբնավորվում ու ձևավորվում է սոցիալիստական հասարակարգում:

**Ընտրության ժամանակը** գիրքը և՛ մեծերին, և՛ դեռահասներին մղում է անկեղծության, ինքնազննման, ինքնաքննադատության, ակտիվ կենսադիրքորոշման: Այն ժամանակակից տարիքային ու մանկավարժական հոգեբանության ոլորտների մի շարք տեսական ու գործնական հարցերին նվիրված արժեքավոր աշխատություն է՝ գրված խորագիտակ ու փորձված մանկավարժի ժուռնալիստական հմուտ գրչով:

**ՇԱՀԱՆԴՈՒԽՏ ԱՎԱԳՅԱՆ**

---



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—53, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի 25.02.83 թ.: Ստորագրված է տպագրության՝ 18.03.83 թ.: ՎՖ 06769: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 17.000: Պատվեր՝ 554:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении, Ереван-23, пр. Орджоникидзе, 2